

# ՈՒՍՈՒՑԻՉԸ

ՀՈՎՀԱՆՆԵՍ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Զանգը տվեց, ահա, ուսուցիչն է գալիս։
Շունչը պահած ամբողջ դասարանն է լռել։
Այդ նա է, որին հարկավոր է միշտ
հարգանքով, կանգնած դիմավորել։
Եվ ոչ թե որպես պարտականություն,
ոչ թե հենց այնպես,
այլ՝ սրտանց, սիրով
և ինքնամոռաց։

Զանգը տվեց, ահա, ուսուցիչն է գալիս։
Գալիս է հպարտ, հոգսերը պահած խորքում.
Նա միշտ ուրախ էր, զվարթությամբ լի,
և մենք չգիտեինք և ի՞նչ իմանայինք,
որ նա մեզանից թաքուն է տխրում։

Զանգը տվեց, ահա, ուսուցիչն է գալիս։
Ամեն օր, ճիշտ ժամին, ո՛չ մի ուշանալ։
Իսկ երբ իմացանք, ո՜նց էինք զարմացել,
որ ուսուցիչն էլ կարող է մրսել
և հասարակ մարդու նման հիվանդանալ։
Եվ ինչպե՜ս էինք հետո զղջացել
մեր փոքրիկ չարությունների համար,
չէ՞ որ, կարող է, այդ օրն հիվանդ էր
և դասի գալը չափազանց դժվար...

Զանգը տվեց, ահա, ուսուցիչն է գալիս։
Թող այսօր ողջ աշխա՛րհը ոտքի կանգնի՝
նրան դիմավորելու
և հարգելու համար...

# ՈՒՍՈՒՑՉԻ

ՏՐԴԱՏ ԽՈՐՇԻԴՅԱՆ

Շուտով ավարտելու էինք դպրոցը։ Տասը երկար ու ծիգ տարիներն անցել էին, ու հիմա երևակայում էինք մեկ անսպառ գիտելիքներով պինված, աշխարհի վաղվա տերեր։

Դպրոցն ավարտելու և կյանք մտնելու միտքը մեկ այնպես էր խենթացրել, որ անփութորեն խախտում էինք դպրոցական կարգ ու կանոնը։ Բանը այնտեղ հասավ, որ մի անգամ, երբ ուսուցիչը դասարան մտավ, տղաներով ոտքի չկանգնեցինք։

Ծերունազարդ ուսուցիչը, սպանիչ արհամարհանքով, անուշադրության մատնեց մեր սանձարձակ վերաբերմունքն ու անխոս նստեց։

Իր թափառ կյանքից ուժասպառ, երբ նա նստում էր աթոռին, ուսերին նինջ էր իջնում...

Վերջին տարիներին մենք աննկատելիորեն առնականանալով, դարձել էինք նաև սնապարծ, իսկ մեր ուսուցչից անգթորեն կաթիլ առ կաթիլ խլվել էր նրա երբեմնի առույգությունն ու կենսասիրությունը։

Մեր ուսուցչի վրա ծերության ծյունն էր մաղվել, իսկ մեր սրտերի վրա՝ ջահելության կրակը։

Աղջիկներն էլ հանկարծակի գեղեցկացել էին և առաջվա նման չէին խռովում, երբ քաշում էինք նրանց ծամերից, թեթև ճռվողում էին ու ժպտում ամոթխած։

Դասի վերջում, մեր աշխուժությունը վերածվեց անտանելի ժխորի, տեղից շարժելով մեր ուսուցչին։

Նա անշտապ բարձրացավ աթոռից ու հոգնած ձեռքերը մեջքին հարմարեցնելով, սկսեց քայլել։

Մեր գլխին բարոյախոսություն չկարդաց։ Թվում էր, թե կհանդիմանի։ Այդ էլ չարեց։

Սկսեց առանց նախաբանի.

— Օքսֆորդի համալսարանն ավարտելուց հետո, ինձ նշանակեցին նույն համալսարանի կոլեջներից մեկում կրտսեր դասախոս...

Մի պահ հապաղեց, ապա մազաղաթյա դեմքին մի լուսավոր ժպիտ փայլեցնելով, շարունակեց.

— Պատկերացրեք ձեր առջև կանգնած առույգ ու ըմբոստ մի հայորդի։ Այն ժամանակ ես քսան տարեկան



digitised by A.R.A.R.@

# ԱՊՏԱԿԸ

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

էի՝ վարմանալի արկածներ կատարելու հասակ, որ մարդուն մի անգամ է տրվում: Ահա այդ հասակում մտա լսարան: Բոլորը մեկ մարդու նման ոտքի կանգնեցին, բացառությամբ մեկի, որ չբարեհաճեց անգամ տեղից շարժվել: Կանգնածներին խնդրեցի նստել, իսկ նստածից պահանջեցի կանգնել: Քրթմնջալով կանգնեց, կարգադրեցի թողնել լսարանը: Շորորալով դուրս եկավ և փոխանակ դեպի դուռը ուղղվելու, դեմքը ծամածռելով մոտեցավ ինձ: Լեռնցու արյունը շառաչեց երակներիս մեջ, ինքս էլ չիմացա, թե ինչպես երիտասարդը ամբողջ հասակով փռվեց հատակին... Հետո համալսարանի տնօրենը ինձանից բացատրություն պահանջեց ու խոժոռ օրորեց գլուխը. «Բայց այնուամենայնիվ, միստր Արապյան, պետք է իմանայիք, թե ում եք հարվածում»...

— Չեկ, իհարկե, անհավատալի կարող է թվալ,— հուզված ձայնով շարունակեց մեր ուսուցիչը,— բայց պետք է ասեմ, որ ես ապտակել էի Հունաստանի թագաժառանգին: Իսկ հաջորդ օրը տնօրենը թագաժառանգին տուն ճամփեց, հետևից ուղարկելով մի այսպիսի գրություն. «Եթե վսեմափայլ թագաժառանգն ի վիճակի չէ իրեն արքայավայել պահել, ապա մենք խոստովանում ենք մեր անկորությունը՝ նրա օգոստոսափառ դաստիարակության նկատմամբ»:

Ծանր կգացում համակեց մեզ: Իր արած այս պատմությամբ մեր ծերացած ուսուցիչը կգաստացնող մի աներևույթ ապտակ էլ կարծես մեզ հասցրեց... ու մենք կգաստացանք:

Տարիներ են անցել:

Այժմ Հունաստանի թագաժառանգը հազիվ թե կենդանի լինի. հիմա թագավորները երկար չեն ապրում...

Մեր սիրելի ուսուցիչն էլ արդեն հուշ է դարձել:

Հիմա, երբ սկսել եմ ինքս էլ ճերմակել, և հոգսն անխնա կնճիռներ է ակոսում ճակատիս, հաճախ եմ հիշում մեր ուժասպառված, ծեր ուսուցչին և նրա հասցրած աներևույթ ապտակը:





# ՀՆԱՐ ԼԻՆԵՐ...

ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ

Ուսուցչուհուս՝ Ջուլիետա Հովհաննիսյանին

Լինե՜ր, ինչ-որ հրաշք լիներ,
Դպրոց գայի նորից,
Նստեի նույն նստարանին
Ու կարոտով խորին
Սերտեի դասն իմ առաջին
Հայացքիդ տակ բարի:
Տվեցիր մեզ դու մայրական
Քնքշանքները քո տաք,
Տվեցիր մեզ, ինչ ունեիր,
Ինչն ազնիվ է ու թանկ:
Բաժանեցիր կտոր-կտոր,
Բաժանեցիր մաս-մաս,
Եվ ամեն օր բաժանելիս
Սպիտակեց մի մազ...
Դու մեր ամեն մի երազին
Շքեղ ձև ես տվել,
Ամեն անգամ մեր թռիչքին
Շունչ ու թև ես տվել...
Դպրոց գայի նորից,
Լինե՜ր, այսօր հնար լիներ,
Դպրոց գայի նորից,
Լսեի քո խրատները
Կարոտանքով խորին:

digitised by A.R.A.R.@

# ԿԱՆԱՉ ԴԱՇՏԸ

*ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ*

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

Կայծակը չոր ճայթյունով բախվեց ժայռին, մի կողմ շպրտվեց և թաղվեց կանաչ գետնի մեջ: Ժայռը կարծր էր, կայծակը հազիվ թե կարողացավ մոխրագույն այդ ժայռից պոկել քարի մի երկու փշուր: Ժայռի տակ կանաչ գետինը այդ հովտում ճայթող բոլոր կայծակների գերեզմանոցն էր. գարունների և ամառների բոլոր կայծակները թաղվում էին ժայռի տակ, և մոտիկ կաղնին միշտ, ամեն ճայթյունի, իր մտքում, կաղնիորեն շնորհակալ էր լինում ժայռին այն բանի համար, որ նա՝ ժայռը, հովիտ նետվող բոլոր կայծակները ձգում թաղում էր իր տակ և կաղնուն փրկում խանձվելուց:

Քիչ առաջ, երբ կայծակը պտտվում էր հովտի և բլուրների վրա և մտածում էր ճայթել ու դեռ չէր ճայթել, քուռակի մայրը մեղմ խրխինջով կանչեց քուռակին. քուռակի մայրը գիտեր, որ կայծակը ճայթելու է, ճայթյունը վախեցնելու է քուռակին, իսկ քուռակը կարծեց մայրն իրեն կանչում է կուրծք տալու և ականջ դրեց ինքը իրեն, ականջները շարժեց և ունկնդրել սկսեց ինքը իրեն, թե ինքն արդյո՞ք ուզում է կուրծք ուտել, և այնքան էլ չէր ուզում ուտել, ուզում էր խոտերից ու ծաղիկներից հոտ քաշել և մեկիկ-մեկիկ ճանաչել խոտերը, և հենց այդ ժամանակ ճայթեց կայծակը: Քուռակը խրտնեց ու վազեց դեպի մայրը, բայց քուռակը շատ էր վախեցել, մորը չէր տեսնում, ուրիշ կողմ էր փախչում: Մայրն ուզեց գնալ դեպի քուռակը, բայց վզի պարանը խանգարեց: Եվ մայրը քուռակին խրխինջով կանչեց իր մոտ:

Քուռակը մեկ ամսվա քուռակ էր, միամսյա նրա կյանքում դա առաջին կայծակն էր: Նա պատսպարվեց մոր լանջի տակ: Մոր լանջի տակից, ականջները սրած, քուռակը մի քիչ լսեց անձրևի թմբկահարումը կաղնու տերևներին, մի քիչ նայեց ժայռին, մասրենու թփին, կաղնուն, աչքերը թարթեց և մոռացավ, որ ինքը վախեցել էր կայծակի ճայթյունից, կարծեց ինքը մոր մոտ էր եկել կուրծք ուտելու: Գանգուր սև պոչիկը թափահարելով, քուռակը մտավ մոր փորի տակ: Պառավ ձին ոտքը ետ դրեց և թուլացրեց կաթի երակները, որպեսզի իր քուռակը ապատ ծծի և կուշտ ծծի:

Դա աստղավարդ քուռակ էր, այսինքն ծածկված էր եղյամի հատիկների նման աստղիկներով: Ոտքերը բարակ ու երկար էին: Ետևի աջ ոտքի սրունքը սպիտակ էր: Ինքը կարծես եղյամոտ էր, ետևի աջ ոտքը՝ ձյունոտ: Վիզը բարակ ու երկար էր: Գլուխը փոքր էր, ճակատին կլորիկ սպիտակ կար, աստղածաղկի նման: Այդ հովտի առվից ջուր խմելու էին գալիս եղնիկներ, ուլեր ու գառներ, նաև՝ այդ ձին, որ շատ քուռակներ էր ունեցել, բայց այս քուռակը այս կանաչ դաշտի ամենագեղեցիկ արարածն էր: Բաշը և պոչը սև էին: Մենք չգիտեինք, թե ինչպիսին են քուռակի աչքերը, որովհետև նա խրտնում էր, և մենք չէինք կարողանում մոտենալ նրան, բայց ասենք, որ այդ քուռակի աչքերը շատ գեղեցիկ աչքեր էին, քանի որ բոլոր ձիերի աչքերը գեղեցիկ են լինում. շրջապատն արտացոլվում է ձիերի աչքերում: Քուռակի աչքերում հիմա արտացոլվում էին կաղնին, ծաղիկները, մասրենին, իր կարմիր մայրը և ամբողջ կանաչ հովիտը:

Նա մի քիչ հիմարիկ էր, բայց հիմարիկ էր փոքրության պատճառով: Անձրևի կաթիլը գլորվեց մտավ նրա ոտքերի արանքը, և նա խրտնեց ու փախավ մոր մոտից: Մայրը նրան ետ չկանչեց. անձրևը դադարել էր, կայծակ այլևս չէր ճայթելու, և հիմա արև էր:

Արևի մեջ կանաչ դաշտը փայլում էր: Թացության ու առատ լույսի մեջ փայլում էր նաև այդ հովտի միակ կաղնին, և մասրենու թուփն էր փայլում, և՛ ձիու թաց մեջքը, և՛ քուռակի մեջքը, և՛ առուն, որ սկսվում էր մոխրագույն ժայռից և գալիս ու գնում էր կանաչ հովտով: Առվից կայծակի հոտ էր գալիս, և քուռակը մի քիչ խրտնեց: Մասրենուց նույնպես կայծակի հոտ էր գալիս. քուռակը մի երկու ցատկ խրտնեց, կանգ առավ, նայեց մասրենուն և տոտիկ-տոտիկ գնաց՝ նորից հոտոտելու:

Ձին ճանաչում էր այդ հովտի բոլոր բույրերն ու հոտերը: Նա գիտեր բոլոր հովիտների ու բլուրների բույրերը, բայց այս հովտի բույրերն ավելի լավ գիտեր, քանի որ ձիուն այս հովտում հաճախ էին կապում արածելու: Կայծակի հոտն անցողիկ էր, արևի տակ, ցողի հետ հիմա պիտի ցնդեր: Ուրցի բույրը նույնպես այս հովտի բույրը չէր, ուրցի բույրը քամին էր նետել բլուրներից հովիտ: Ձին արածում էր և ոչխարի թաց բրդի հոտ էր կգում: Ձին մտածում էր, որ բլուրների մյուս երեսին ոչխարներ են արածում, ուրեմն նաև գամփռ շներ կան:

Բլուրների մյուս երեսին ոչխարներ են արածում, հովտի թաց խոտը համեղ է, առվի ջուրը համեղ է,— մտածում էր պառավ ձին,— արևը ջերմացնում է, և քուռակը խրտնում ու մեծանում է հովտի ջերմ բարության մեջ:

Ձին բարձրացրեց գլուխը. կաղնին կանգնած էր հանգիստ, ժայռը կեցած էր մի տեսակ քնածի պես, քուռակը մասրենուց հոտ էր քաշում: Արևը ջերմացնում էր, և խոտը համեղ էր, հարկավոր էր արածել: Ձին գլուխը կախեց արածելու, մի երկու բերան խոտ պոկեց, բայց անհանգստացնող ինչ-որ բան կար, և ձին գլուխը բարձրացրեց:

Կանաչ հովտի մեջ անշարժ կանգնած, գլուխը բարձր՝ կարմիր պառավ ձին երկար նայեց հովտին և երկար ունկնդրեց լռությունը: Ամեն ինչ առաջվա պես էր. կաղնին կեցած էր հանդարտ, ժայռը նիրհում էր, քուռակը թռչկոտում էր մասրենու մոտ: Եվ կարծես թե կարելի էր արածել, բայց կարմիր ձին մռութը չիջեցրեց մինչև գետին, գլուխը կտրուկ վեր նետեց և սպասեց ականջները սրած՝ որսալու համար հովտի բոլոր թաքուն ձայները: Եվ սպասեց ռունգերը լայնացրած՝ զգալու համար հովտի օտար հոտերը: Թիթեռները շրջում էին, մեղուները երգում էին, առուն խոխոջում էր, վիզը ձգած՝ քուռակը պտտվում էր թիթեռի ետևից մասրենու շուրջը, բայց պառավ կարմիր ձին ուզում էր լսել ոչ թե այդ ձայները և ուզում էր տեսնել ոչ թե այդ պատկերները: Հովտում, համենայն դեպս, վտանգ կար: Օդում այդ վտանգից ձայն չկար, հովտում այդ վտանգը չէր երևում, քամու մեջ այդ վտանգի հոտը չկար, բայց ձին չէր կարողանում արածել:

Պառավ կարմիր ձին սկսեց պայրանալ: Կարմիր պառավ ձին պայրանում էր այն բանի համար, որ հովտում թշնամի կար, բայց այդ թշնամին չէր կգացվում, չէր լսվում և չէր երևում:





digitised by A.R.A.R.@

Կանաչ հովտում կանգնած՝ նայում ու լռությունն ունկնդրում էին մոխրագույն ժայռը, փարթամ կաղնին, կարմիր պառավ ձին և մասրենու թուփը: Եվ ժայռի համար կանաչ հովտում չկար ոչ մի վտանգ, որովհետև կայծակ այսօր այլևս չէր լինելու: Կաղնին նայում էր, և կաղնու համար ամեն ինչ լավ էր, որովհետև կայծակ չէր լինելու և ջերմ արև էր: Մասրենու համար նույնպես լավ էր, որովհետև քուռակի դունչը չէր հասնում նրա կատարի մի երկու ծաղկին: Իսկ պառավ կարմիր ձին լարված սպասումից քրտնեց:

Հովիտը դավաճանում էր ձիուն. հովտում թշնամի կար, բայց հովիտը չէր մատնում թշնամու ձայնը և թշնամու հոտը: Կարմիր պառավ ձին սիրտ չէր անում գնալ դեպի քուռակը. վախենում էր իր ոտնաձայների մեջ կորցնի թշնամու թաքուն ձայները: Կարմիր պառավ ձին սիրտ չէր անում շնչել. վախենում էր թոքերի աղմուկի մեջ կորցնի թշնամու թաքուն շնչառությունը: Կարմիր պառավ ձին աչքերը չէր թարթում. վախենում էր, որ իր աչքաթարթի հետ թշնամին տեղից-տեղ կցատկի և ինքը չի հասցնի նկատել նրա ցատկը:

Կանաչ հովտի մեջ այդպես անշարժ կանգնած էին ժայռը, կաղնին, մասրենին, ձին: Ժայռը նիրհում էր: Կաղնու կաղինները ապահով կրահների մեջ լցվում էին հյութով, և կաղնու համար ամեն ինչ լավ էր: Մասրենին իր ծաղկաբաժակները բացել էր արեգակի դեմ և արև էր խմում, իսկ կարմիր պառավ ձին կայրույթից դողում էր: Երբեք, ոչ մի անգամ հովիտը ձիուն այդպես չէր դավաճանել: Գուցե կայծակի՞ հոտն էր ձիու ռունգերին խանգարում զգալ այն հոտը, որ ուներ թշնամին, որը մոտերքում էր, մոտիկ մի տեղ էր և հոտոտում էր, բայց նրա հոտը թաքնվում էր կայծակի ծծմբահոտի տակ:

Քուռակը նայում էր մի բանի և ապա նայում էր մորը: Դարձյալ նայում էր նույն բանին, ապա նայում էր մորը: Այդ բանը մայրը չէր տեսնում. մոր մոտից այդ բանը չէր երևում: Քուռակը նայում էր այդ բանին, ապա գլուխը թեքում էր մոր կողմը: Մայրը կանգնած էր գլուխը բարձր, և մոր աչքերը վառվում էին:

Քուռակը վիզը ձգեց, դնչիկը պարզեց և գնաց դեպի այդ բանը, և այդ պահին մայրն զգաց գայլի զզվելի հոտը: Մայրը խրխինջ արձակեց ու նետվեց դեպի քուռակը և տեսավ, թե գետնից ինչքան սահուն ու երկար ցատկով պոկվեց գայլը:

Բլուրների մյուս երեսին լսվեց ձիու ջղային կարճ խրխինջը: Բլուրների մյուս երեսին, ոչխարների մոտ, գամփռ շները մի վայրկյան սրվեցին, մի քիչ սպասեցին ուրիշ ձայների և հանգստացան:

Կարմիր ձին նետվեց դեպի քուռակը, թափով նետվեց դեպի գայլն ու քուռակը, բայց տապալվեց: Նա պառավ ձի էր, ուրիշ անգամներ էլ նա ընկել էր, բայց ոչ մի անգամ այդպես անսպասելի չէր տապալվել: Տապալվեց ու ելավ միանգամից: Նրան տապալել էին իր հուժկու թափը և պարանը: Պարանը նրան խեղդում էր, պարանը նրան չէր թողնում թռչել իր փոքրիկի մոտ:

Քուռակը փախչում էր մասրենուց դենը՝ հեռու մի տեղ, քուռակն ուզում էր դեպի մայրը գալ, երկար շրջան տալով քուռակը ձգտում էր դեպի մայրը, բայց գայլն ամեն անգամ կտրում էր նրա ճանապարհը և նրան հեռացնում ու դարձյալ հեռացնում էր: Իսկ պարանը խեղդում էր մորը: Եվ քուռակը ցատկեց գայլի վրայով դեպի մայրը, բայց գայլը տակից բռնեց նրա ետևի ոտքը և քուռակն ընկավ: Քուռակը ճչաց ու վեր ցատկեց:

Բլուրների մյուս երեսին լսվեց քուռակի սուր ծղրտոցը, և գամփռ շները սրվեցին, և գամփռ շների մեջ սրվեց սևադունչ Թոփուշ շունը:

Քուռակը ճչաց ու վեր ցատկեց, և այդ ժամանակ մայրը ծառս եղավ և ամբողջ ծանրությամբ ու ամբողջ կատաղությամբ ձգվեց դեպի գայլն ու քուռակը, և պարանը կտրվեց ու մտրակվեց մոր ոտքերին: Մայրը գնաց ամբողջ թափով, ամբողջ ուժով, ամբողջ կատաղությամբ ու ամբողջ սիրով: Նա շատ արագընթաց զամբիկ էր, բայց իր կյանքում երբեք այդպես, թռիչքի պես չէր սլացել:

Բլուրների մյուս երեսին լսվում էր նրա սմբակների խուլ դոփյունը: Հետո բլուրների մյուս երեսին հովտի ոչ մի ձայն չէր լսվում, և գամփռ շներն ու փոքրիկ հովիվը խաղաղվեցին:

Գայլը քուռակին թողեց ու ազատվեց տրորվելուց: Ձին հարձակվում էր, և գայլը մի քիչ փախավ: Ձին դարձյալ գալիս էր, և գայլը մի քիչ էլ ետ քաշվեց: Դունչը գետնին հպած՝ ձին գալիս էր, դանդաղ, սպառնալի՝ ձին գալիս էր, գայլը ճապաղվեց գետնին և ահա-ահա կարող էր ցատկել ու կախվել ձիու ռունգերից, և ձին շուռ եկավ:

Ձին շուռ եկավ, և գայլը չցատկեց, պտույտ տվեց և կանգնեց ձիու դեմ: Քուռակը լանջի տակ՝ ձին դարձյալ շուռ եկավ, և նրա հետ պտտվեց նաև գայլը: Գայլը անընդհատ պտտվեց, և ձին անընդհատ շուռ եկավ: Երկու կարճ ցատկով գայլը հայտնվեց ձիու դնչի տակ, բայց ձին դարձյալ հասցրեց շրջվել ու աքացի շպրտել: Մի երկար ցատկով գայլը հայտնվեց ձիու դնչի տակ, և ձին չհասցրեց լրիվ շրջվել. գայլը կարողացավ քերծել ձիու ռունգերը, և ձին կարողացավ նրան տրորել առջևի ոտքով: Գայլը ետ քաշվեց, բայց չփախավ. նստեց ու նայեց ձիուն, և ձին էլ նայեց գայլին: Եվ գայլը հասկացավ, որ ձին իր քուռակին պաշտպանելու է մինչև վերջ, և ձին հասկացավ, որ գայլը չի հեռանալու: Ձին քրտնել էր, բայց գայլը նույնպես հոգնել էր: Գայլը նետվեց միանգամից: Դրանից հետո գայլն անընդհատ ցատկեց դեպի ձիու ռունգերը, և ձին անընդհատ շրջվեց և քուռակին պահեց անընդհատ լանջի տակ:

Արդեն երեկո էր, նրանց շարժումները դանդաղել էին, ձիու շուրջը գայլը պտտվում էր դանդաղ, գրեթե քարշ էր գալիս, գրեթե սողում էր, և ձին իր տեղում պտտվում էր դանդաղ, դժվար, երբեմն սայթաքելով և գրեթե ընկնելով: Նրանց աչքերը մթնել էին, և նրանք միմյանց հազիվ էին տեսնում: Հոգնածությունից նրանք խլացել էին:

Փոքրիկ հովիվը դուրս եկավ բլուրների գլուխ և նայեց մայրամուտին: Մայրամուտը կարմիր էր, մայրամուտի տակ գեղեցիկ էր հովտի միակ կաղնին... բայց այն, ինչ տեսավ փոքրիկ հովիվը, այնքան տգեղ էր, որ փոքրիկ հովիվը չէր կարողանում խոսել. գայլը կախվել էր կարմիր ձիու ռունգերից, և կարմիր պառավ ձին չէր կարողանում տրորել գայլին. կարմիր պառավ ձին արդեն-արդեն խոնարհվում էր:

— Այ տղա հե՜յ,— կանչեցին դիմացի բլուրներից,— էն գելն էն ձիուն խեղդում է, այ տղա հե՜յ... շներն ո՞ւր են, հե՜յ...

Փոքրիկ հովիվը բերանը բացեց ծղրտալու, բայց չկարողացավ ձայն հանել: Փոքրիկ հովիվը միայն ձեռքերը թափահարեց: Գամփռ շները սրվեցին ու նայեցին: Գամփռ շները տեսան ու թռա՜ն... Թոփուշը, Բոբը, Սևոն, Բողարը, Չալակը, Չամբարը: Սևադունչ Թոփուշը վարպետ շուն էր, լուռ գնում ու բռնում էր, նա առջևից հիմա էլ լուռ էր վազում, իսկ Բողարը ջահել շուն էր, գայլերից դեռ մի քիչ վախենում էր, այդ պատճառով էլ հաչում էր դեռ հեռվից, որպեսզի գայլերը փախչեն և



digitised by A.R.A.R.@

ինքը այդպիսով նրանց հետ չկռվի: Բողարը հիմա գնում էր հաչելով: Բողարը շատ արագավազ էր, նա հիմա Թոփուշից երբեմն առաջ էր անցնում, բայց չէր համարձակվում պոկվել խմբից ու գնալ մենակ, կանգնում էր և հաչելով սպասում Թոփուշին, վազում էր Թոփուշի կողքից, սակայն դարձյալ առաջ էր անցնում և դարձյալ դանդաղում:

Երբ ձին ախ-ախ պիտի ծնկեր, գայլը հեռվում, կարծես երազում, շների հաչոց լսեց: Գայլը չուզեց հավատալ, թե շները հաչելով իր վրա են գալիս, բախտը հո չէ՞ր կարող լինել այնքան անողոք, որ իր մեկ լրիվ օրվա չարչարանքն անտեղի անցներ և ինքը իր երեք ձագի մոտ դառնար քաղցած ու դատարկ:

Երբ իր մեջ այլևս ուժ չկար, և ռունգերի ցավերը բթանում էին, և աչքերը բոլորովին մթնել էին, և ականջները լիովին խլացել էին, մայր ձին հեռու-հեռվում շների հաչոց լսեց և հավատաց, որ շները հաչում են իր քուռակի համար և իր համար. բախտը հո չէ՞ր կարող լինել այնքան դաժան, որ նրա քուռակն ապրեր ընդամենը մի հունիս: Պառավ ձին գիտեր, որ շները մոտիկ են, և շների հաչոցը հեռավոր է թվում իր հոգնած խլության պատճառով: Պառավ ձին գիտեր, որ ինքը կարող է համբերել մի քիչ էլ, դեռ մի քիչ էլ, մինչև շների հասնելը ինքը պարտավոր է համբերել: Բայց ի՞նչ ծանր է շնչելը, ի՞նչ ծանր բեռ է դարձել այս կյանքը:

Շների հաչոցը պայթեց գայլի հենց ականջների մեջ, բայց գայլը դարձյալ չէր հավատում, որ այդպիսի տանջալից հաջողությունից հետո այդպիսի ձախողություն կպատահի: Ձագերը տանը քաղցա՛ծ, իր պտուկները դատա՛րկ... Վիզը ծակծկեցին, ականջը ծակծկեցին, և գայլը բաց թողեց ձիու ռունգերը: Թաթը բռնել էին: Թաթն ազատելու ուժ չկար: Գայլն ուզում էր քնե՛լ, քնել: Կռվելու ուժ չկար, գայլն ուզում էր մեռնե՛լ, հանգստանալ: Գայլը ճապաղվեց գետնին և բուկը սեղմեց գետնին, որպեսզի շները բուկը չբռնեն: Շները քրքրում էին նրա մեջքը, վիզը, քաշքշում էին ականջներից, իսկ նա բուկը պաշտպանում և հանգստանում էր շների կույտի տակ:

Գայլը մի թաթ կծեց, և շներից մեկը վնգստոցով մի կողմ ցատկեց: Գայլը կանգնեց, և շները, շրջապատած սպասեցին: Շների մեջ կանգնած՝ գայլը նայեց շներին, և նրանք շատ էին, և դժվար էր, անչափ դժվար էր, անհնար էր ազատվել նրանցից ու քարշ գալ դեպի տուն, ուր սպասում էին ձագերը: Ժանիքները բաց՝ գայլը նայեց շներին, շները նայեցին գայլին, մի պահ այդպես նայեցին միմյանց, և գայլը չգիտեր ինչ էր անելու, և շները չգիտեին ինչ են անելու: Եվ շներից մեկը փշաքաղվեց, ցատկեց ու լանջով խփեց շպրտեց գայլին: Գայլը հազիվ կարողացավ չընկնել և հասկացավ, որ ամենավտանգավորը դունչը սև այդ շունն է:

— Այ տղա հե՛յ... էդ ո՞վ ես հե՛յ... հասիր էն շներին օգնիր, հասիր էն շներին օգնիր թող խեղդեն, հե՛յ...—կանչեցին դիմացի բլուրներից:

Ձին կանգնած հազիվ էր մնում: Ձիու գլուխը ծանրանում ու խոնարհվում էր: Ձին զգում էր, որ քուռակը ծծում է և հազիվ կարողանում էր ուրախանալ քուռակի ծծելուց: Ձիու գլուխը հակվեց, ծալվեցին նաև առջևի ոտքերը, իսկ քուռակը դեռ ծծում էր: Ձին փուլ եկավ: Քուռակը հիմա կանգնած էր ձիու մոտ և սպասում էր մոր ելնելուն, սակայն մայրը չէր ելնում: Քուռակը դնչիկով խփեց մոր փորին, սակայն մայրը չկանգնեց, չշարժվեց: Քուռակը նստեց մոր փորի մոտ, և ետևի ոտքը սաստիկ ցավեց, և սկսեց ծծել: Եվ մայրը դեռ կաթ էր տալիս, դեռ վարա՛ր, վարար կաթ էր տալիս, վերջին անգամ կաթ էր տալիս իր այլևս որբ քուռակին, իր կյանքում ունեցած ամենագեղեցիկ քուռակին, որն աստղակարդ էր, բաշն ու պոչը՝ գանգուր սև, սրունքը՝ սպիտակ և ճակատին՝ աստղածաղիկ, որ մի քիչ հիմարիկ էր, բայց հիմարիկ էր փոքրության պատճառով:

Գայլը, համենայն դեպս, կարողացավ փախչել: Եթե փախչել չկարողանար՝ նրա ձագերը որբ կմնային և, բոլորովին անօգ էին, կկոտորվեին, և գայլը կարողացավ փախչել: Դա փախուստ չէր. դա նահանջ էր քայլ առ քայլ, ցատկ առ ցատկ, մի քանի ցատկ առ մի քանի ցատկ. մի քանի ցատկից հետո, երբ շները հասնում ու քիչ էր մնում բռնեին, գայլը շուռ էր գալիս, փշաքաղվում ու ժանիքները բացում, և շները կանգ էին առնում, և գայլը դարձյալ մի երկու ցատկ հեռանում էր:

Սևադունչ խսկա գամփռը այդպես էլ չկարողացավ բռնել գայլի բուկը, և գայլը չկարողացավ կծել ու վախեցնել նրան, բայց սևադունչ գամփռը գայլին հիմա չէր հետապնդում, որովհետև գայլի վզից մի փունջ մազ էր մտել նրա բերանը և սևադունչը հիմա ետ էր ընկել և ործկալով ու փռշտալով՝ կզվանքով մաքրում էր բերանը: Սևադունչը չէր հետապնդում, իսկ մյուս շները վտանգավոր չէին, որովհետև վարպետ չէին:

Շները կորցրին գայլին, ապա կորցրին նաև հետքը, բայց երկար ժամանակ պտտվում, վազում, խառնվում ու ռռնում էին կանաչ հովտի մեջ, ուր հիմա մթնել էր ժայռը, հանգիստ կանգնած էր կաղնին, իր մի երկու ծաղկաբաժակը ցող հավաքելու էր պարզել մասրենին և ուր ընկած էր կարմիր պառավ ձիու մարմինը: Քուռակը կանգնած էր մոր մոտ և մի քիչ անհանգստանում էր, կարծես թե արդեն հասկանում էր պատահածը:

Մայրամուտի տակ ամբողջ հովիտը լուսավոր կանաչ էր, և սև էր, շատ մուգ սև էր պառավ կարմիր ձիու շուրջը: Պառավ ձիու կարմիր մարմինն ընկած էր այդ սև շրջանակի մեջ: Այդ սև շրջանակը ձիու և գայլի կռվի տեղն էր, այդ սևը ձիու տրորածն էր: Այդ սև, տրորված, քանդված, շատ տրորված գետնին նայելով կարելի էր հասկանալ, թե ինչքան երկար ժամանակ էր պտտվել պառավ ձին գայլի հետ ինքը իր շուրջը:

Սև այդ շրջանակը այդպես սև էլ մնաց մի երեք տարի, մի երեք տարի այդտեղ խոտ չէր ծլում, և մեր հին լավ ձիու սպիտակ կմախքն ընկած էր այդ սև շրջանի մեջ: Հետո կանաչը հաղթեց. կանաչը ծլեց այդ սև շրջանի մեջ, կմախքի արանքներից ծաղիկներ ծաղկեցին, խոտերը ելան, փարթամացան, և կանաչ հովիտը հիմա լիովին կանաչ է:

Երբ բլուրների գլխից նայում ես՝ կանաչ հովիտը լիովին կանաչ է, կաղնին վեհորեն կեցած է կանաչ հովտում, ժայռը նիրհելով ունկնդրում է ամպերի շրշյունը, մասրենին իր հինգ հատ ծաղկաբաժակը պահել է արևի տակ, և կանաչ դաշտում կապած արածում է աստղակարդ մի ձի՝ ետևի աջ ոտքի սրունքը սպիտակ, ոտքերը երկար, վիզը երկար, բաշն ու պոչը արևախանձ ու թուխ, ճակատին՝ սպիտակ աստղածաղիկ: Երբ քայլ է դնում, ետևի աջ ոտքը մի քիչ ձգվում է, ջղային դողի պես. հին սպիի պատճառով:

Աստղածաղիկ ճակատով ձին բարձրացնում է գեղեցիկ գլուխը, և նրա աչքերի մեջ արտացոլվում են ժայռը, կաղնին, ծաղկած մասրենին, կանաչ հովիտը և կապույտ երկնքի սպիտակ ամպերը:

— Վերջացա՞վ:

— Վերջացավ:

— Ոչ:

— Ինչո՞ւ «ոչ»:

— Մայր ձին թող չմեռնի:

— Ես չեմ կարող ասել, թե մայր ձին չմեռավ, որովհետև մայր ձին մեռավ: Երբ փոքրիկ հովիվը վազելով իջավ բլուրների գլխից՝ մայր ձին մեռած էր, քուռակը տխուր կանգնած էր մոր կողքին: Երբ այն հովիվը, որ կանչում էր «ա՛յ տղա,



digitised by A.R.A.R.@

# ՄԵՐ ԴԵՂԻՆ

ՕԼԳԱ ՍԱՆԱՀՅԱՆ



ենք մի հավի ճուտիկ ունեինք: Մեծացավ դարձավ մի փափլիկ, դեղին հավիկ: Նա շատ ինքնուրույն էր: Ցերեկը բակում քուջուջ էր անում, ձու էր ածում պատշգամբի տակ՝ անկյունում, և այնտեղ էլ գիշերը թառում: Բայց երբ արդեն ձմեռնամուտ էր, մայրիկս մի երեկո անհանգստացավ.

— Հավիկը մրսում է, շինարարության պահակի գամփռն էլ գիշերները գալիս է մեր բակը, մեկ էլ տեսար հավիկին խեղդեց: Ի՞նչ անենք,— դիմեց նա հայրիկիս:

Զարմանալի բան, հայրիկս ուսերը բարձրացրեց, ձեռքերը խրեց գրպաններն ու ասաց.

— Ի՞նչ իմանամ:

— Ուրեմն չգիտե՞ս ինչ անենք,— նեղացավ մայրիկը:

— Իսկ դու ինքդ չգիտե՞ս:

— Որտեղի՞ց իմանամ:

— Բայց մի՞թե իսկապես չգիտես, չէ՞ որ դու միշտ իմանում ես, թե...

— Դե, այդ գիտենալը դժվար բան չէ,— դիրքերը զիջեց մայրս,— եթե մարդիկ տեղ չեն ունենում, որ հավերին պահեն, և եթե նրանք թառում են պատշգամբի տակ, և եթե պահակի գամփռը գիշերը գալիս է բակը, պարզ է, թե մարդիկ ինչ են անում...

— Ի՞նչ են անում:

— Նրանք ը... ը... մո... մո...

— Այո՛, այո՛,— օգնում էր հայրիկը:

Բայց մայրս վճռաբար ասաց.

— Ո՛չ, դու այդ բառը ինձնից չես լսի:

— Եվ դու էլ ինձնից չես լսի,— կրկնեց հայրըս,— և հետո էլ՝ ես ոչ մի գործ չունեմ հավիկի հետ և... ժամանակ էլ չունեմ,— ու գնաց մյուս սենյակը, նստեց թախտին:

— Ի՞նչ է պատահել,— դրսից ներս գալով հարցրեց Վաչիկը՝ իմ եղբայրը:

— Հավիկի համար է,— պատասխանեցի ես:

— Եվ ի՞նչ:

— Ոչինչ:

— Ինչպե՞ս թե ոչինչ: Չլինի՞ ուզում են մորթել:

Ես գլխով արեցի, մտքումս ուրախանալով, որ Վաչիկը դեմ կլինի դրան: Բայց ի՛նչ, Վաչիկը պահարանից վերցրեց դանակը և քայլեց դեպի դուռը:

— Ո՞ւր ես գնում,— դեմը ելա ես:

— Գնում եմ մորթեմ:

— Ի՞նչ,— ճչացի ես,— կտրի՛ճ է դարձել, հա՛վ է մորթում: Տո՛ւր դանակը:

---

հե՛յ», այդ հովիվը երբ իջավ դիմացի բլուրներից, մայր ձին արդեն լրիվ սառած էր, և ծեր հովիվն ու փոքրիկ հովիվը մի քիչ նստեցին պառավ կարմիր ձիու կողքին և մտածեցին, թե ինչպես են պահելու քուռակը:

— Հետո, ինչպե՞ս պահեցին:

— Մի ուրիշ ձիու կաթով:

— Ոչ, մայրը թող չմեռնի:

— Ես չեմ կարող ասել, թե մայրը չմեռավ, որովհետև այդ ամբողջ ամառ այդ որբ քուռակին ես կերակրում էի ուրիշ ձիերի կաթով:

— Ասե՞մ թող ինչ լինի:

— Ասա՛:

— Բլուրների մյուս երեսի հովիվը թող բլուրների գլխին լինի և գայլին շուտ նկատի:

— Հովիվը բլուրների մյուս երեսին էր և գայլին նկատեց այն ժամանակ, երբ դուրս եկավ բլուրների գլուխ:

— Ձին ինչո՞ւ մեռավ:

— Երբ նստած էին պառավ կարմիր ձիու մարմնի մոտ՝ ծեր հովիվը փոքրիկ հովվին ասաց, որ ձիու սիրտը պայթել է քուռակի համար վախենալուց և կսկանքից ու կատաղությունից:

— Գայլի՞ց էր կպվել:

— Այո՛, գայլից:

— Շները գայլին թող խեղդեն:

— Ես չեմ կարող ասել, թե շները գայլին խեղդեցին, որովհետև մեր սևադունչ շունը գայլի մաշկ էր կուլ տվել և քիչ էր մնում ինքը սատկեր:

— Փոքրիկ հովիվը դո՞ւ էիր:

— Ես էի, ձին մեր ձին էր, քուռակը մեր ձիու քուռակն էր:

— Հիմա քուռակը մեծացել է, կապա՞ծ է կանաչ հովտում:

— Այո՛, մեծացել է, կապած է կանաչ հովտում:

— Իր կարմիր մայրիկին հիշո՞ւմ է:

— Գուցե հիշում է իր կարմիր մայրիկին, որովհետև ձիերը հիշում են:

— Դե, նորի՛ց պատմիր:

— Կայծակը չոր ճայթյունով բախվեց որձաքարե ժայռին, մի կողմ շպրտվեց և թաղվեց կանաչ գետնի մեջ: Մոխրագույն ժայռը կարծր էր, կայծակը հազիվ թե կարողացավ որձաքարե այդ ժայռից պոկել քարի մի երկու փշուր: Միայն թե մի քիչ վախեցավ կաղնին, որովհետև կայծակները խփում ու խանձում են կաղնիները, և շատ վախեցավ երկարոտն սատղայարդ փոքրիկ մտրուկը. քուռակին «մտրուկ» են ասում... այնպես վախեցավ, որ փախչում էր իբր մոր մոտ, բայց մորը չէր տեսնում և փախչում էր ուրիշ կողմ: Եվ կարմիր պառավ ձին մեղմ խրխինջով հայտնեց նրան իր տեղը...



digitised by A.R.A.R.@

# ՀԱՎԻԿԸ ԵՎ ՄԵՆՔ

— Չեմ տա, գնում եմ մորթեմ, հավ մորթելն ի՞նչ է ինձ համար, հե՜չ: Հի՜, հի՜, հի՜:

— Դա քո բանը չէ՛, տղա՛ս,— ասաց մայրս առաջ գալով, բայց Վաչիկն արդեն իջնում էր աստիճաններով: Նա արդեն տասնչորս տարեկան էր:

Ես գնացի հորս մոտ, լուռ կանգնեցի:

Քիչ հետո մայրս էլ եկավ: Մենք նայում էինք միմյանց: Ես մտածում էի՝ «հիմա Վաչիկը մոտեցավ հավիկին, ՛իմա թառից իջեցրեց, դրեց գետնին, հիմա...»

— Դու հուզվո՞ւմ ես,— հարցրեց հայրս՝ մազերս շոյելով:

— Հայրի՛կ, ես իսկի հավի միս չեմ սիրում:

— Վաչիկն ուշացավ,— ասաց մայրս:

— Այո՛, Վաչիկն ուշանում է,— կրկնեց հայրս:

Նա վեր կացավ, գնաց պատշգամբը, ես ու մայրս էլ՝ ետևից: Դրսում մութ էր:

— Վաչի՛կ, վերջացրի՞ր,— ձայն տվեց հայրս:

— Ի՞նչ պիտի վերջացնեմ,— պատշգամբի տակից գոչեց եղբայրս,— հավիկը քնած է:

— Քնա՞ծ է:

— Այո՛, գլուխը խրել է թևի տակ ու քնել: Ո՞նց արթնացնեմ:

— Հա՜, դե որ քնած է...— ասաց հայրս իր թավ ձայնով,— որ քնած է, ուրի՜շ բան:

— Եթե արթուն լիներ, ուրի՜շ բան,— շարունակեց մայրս:

— Ես էլ այդ եմ ասում, էլի՜,— Վաչիկի ձայնը հնչեց ավելի վստահ,— ախր ինչի համար արթնացնեմ: Արթնացնեմ որ ի՞նչ...

— Վաչի՛կ, թող քնի՜,— բղավեցի ես:

— Հապա պահակի գա՞մփռը...

— Ինչպե՞ս անենք,— մտածմունքի մեջ ընկավ հայրս,— այդտեղ մի տախտակ կամ արկղ չկա՞:

— Այստեղ մի դուռ կա դրված,— պատասխանեց Վաչիկը,— բայց շ-շա՜տ ծանր է, չ-չե՜մ կարողանում գետնից բարձրացնել:

— Հասմի՛կ, գնա մոմն ու լուցկին բե՛ր,—դիմեց հայրս ինձ:— Ես թռա ներս, վազեցի դուրս, և մենք բոլորով միասին ծանր դուռը տեղից շարժեցինք, հենեցինք պատին, հավիկի համար ապահով անկյուն սարքեցինք:

Քիչ հետո մենք արդեն վերևում էինք՝ պատշգամբում, մեր փոշոտված հագուստներն էինք մաքրում և լվացվում: Ես նայում էի մերոնց, նրանք տարօրինակ ուրախ էին, է՜, ես ինչո՞ւ էի ետ մնացել: Եվ սկսեցի բարձր ծիծաղել:

— Ի՞նչ ես ծիծաղում,— ծուռը նայեց Վաչիկը,— էլի սկսեցի՞ր:

— Մոմի կաթիլները ձեռքս այրել են...

— Իսկ ե՞ս ինչու չեմ ծիծաղում, որ մատս քերծել եմ:

— Հապա ե՞ս, որ պատռել եմ գուլպաս,— մեզ միացավ մայրս:

— Ես էլ, ճիշտն ասած, գլուխս խփեցի պատշգամբի տակի գերանին,— խոստովանեց հայրս, և նրա ասելու ձևից հասկացա, որ գլուխը կարգին ցավեցրել էր:

Հետո մենք նստած էինք սեղանի շուրջը՝ թեյ էինք խմում, մեծ, կլոր, մետաքսե լուսամփոփից ոսկեվուն շողեր էին ցայտում, և ինձ հանկարծ թվաց, թե դեղին լուսամփոփի վրա նստել է մեր դեղին հավիկը, թառել է իրեն համար և ձայնը գլուխը գըցած, կչկչում է.

— Ձեր հայրիկը մե՜ծ է, մե՜ծ-մե՜ծ, իսկ մայրիկը փոքրիկ է, հայրիկի կեսի-կեսի չա՜փ, չա՜փ, չա՜փ: Իսկ Վաչիկը սևուկ է, իսկ Հասմիկը շեկլիկ է: Դուք ոչ մեկդ իրար նման չեք, չե՜ք, չե՜ք-չե՜ք: Բայց շատ եք իրար նման, շա՜տ-շա՜տ-շա՜տ:

Եվ կարծես բոլորն էլ նկատում էին, թե ինչպես է հավիկը նստել լուսամփոփի վրա: Ամեն մեկը ծածուկ նայում էր վերև՝ հավիկին ու ծածուկ ժպտում:

## ԱՇՈՒՆ

*ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ*

Էլ չի ժպտում արևը
Առաջվա պես սրտաբաց,
Թիկնել է սև ամպերին
Ու սահում է լո՜ւռ, կամա՜ց:
Առուն բարակ թելի պես
Կարկատաններ է անում,
Աշնան ջուրը՝ չգիտես,
Դաշտերով, ո՜ւր է տանում:
Շաղիկները վերևից
Եկել, իջել են հողին,
Տերևները ծառերի
Ներկել են բակը դեղին:
Երամները հավքերի
Չեն երևում էլ դրսում,
Թփուտներում միայնակ
Խենթ քամին է փսփսում:
Աշո՜ւն, ինչո՞ւ դու եկար,
Ինչո՞ւ այդպես արեցիր,
Մեր պարտեզում ինչ որ կար,
Աշխարհով մեկ ցրեցիր:

digitised by A.R.A.R.@




# ԳՈՆՉՈ ԲԶԵԶԸ

ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

Նորածին բզեզներն այնքան փոքր են լինում, որ չեն էլ իմանում, թե իրենք բզեզ են: Մայր բզեզը կանչում է նրանց, բացատրում, որ նրանք բզեզ են, ինչ բզեզ են, ինչ պիտի անեն, ինչով զբաղվեն: Ապա սկըսում է բերանները վարմանքից բաց բզեզիկներին անուններ դնել.

— Դու Բզզանն ես, դու՝ Մզզանը, դու՝ Տզզանը, դու՝ Վզզանը: Ում անունն եմ դրել՝ աջ անցնի: Դու Բզբզանն ես, դու՝ Մզմզանը, դու՝ Տզտզանը, դու՝ Վզվզանը:

Երբ բոլորն աջ անցան և այլևս ոչ ոք առանց անունի չմնաց, հանկարծ ցողունների միջից դուրս եկավ մի բզեզիկ:

— Ա՜խ, ի՞նչ անուն դնեմ այս քնկոտ, մռռացկոտ, ցրված բզեզիկին,— հառաչեց Մայր բզեզը:

Քնկոտ, մռռացկոտ, ցրված լինելու համար դրա անունը դրեցին Գոնչո: Անուններ դնելուց հետո Մայր բզեզը նրանց տարավ Գիտունների Գիտուն բզեզի մոտ: Այստեղ բոլոր դպրոցական հասակի բզեզները նստել էին ցողունների, խոտերի, տերևների վրա, դաս էին առնում: Իսկ Գիտուններից Գիտուն բզեզը դաս էր տալիս.

— Մենք պատկանում ենք խայտաբղետ փոքր բզեզների դասին: Մեզ անվանում են նաև թևավոր քաղցրասերներ, որովհետև մենք սնվում ենք ծաղիկների նեկտարով: Սա ծաղիկն է,— մի ծաղիկ կռացնելով բացատրում էր Գիտուններից Գիտուն բզեզը:— Երբ իջնեք ծաղկի վրա, նախ իմացե՛ք, որ թերթիկները ծաղկապսակ են կոչվում: Նախքան գլուխներդ ներս խոթելը, իմացե՛ք, որ ներսում են գտնվում առէջները և վարսանդը: Երբ անուշ կանեք նեկտարը,— շրթները լիզելով շարունակեց Գիտուններից Գիտուն բզեզը,— առէջների ծաղկափոշով դուք ակամա կփոշոտեք վարսանդը: Առանց փոշոտման ոչ մի ծաղիկ պտուղ չի դառնա: Ահա, թե ո՛րն է ծաղիկների և միջատների աշխարհի կապը:

— Հարց,— ձեռք բարձրացրեց մի ուշիմ բզեզիկ:— Ինչո՞ւ պիտի մենք փոշոտենք ծաղիկը, թող ինքն իրեն փոշոտի:

— Գիտնական մարդիկ մեր աջակցությամբ ապացուցել են, որ բույսի համար ինքնափոշոտումը պակաս օգտավետ է, քան խաչաձև փոշոտումը,— պատասխանեց Գիտուններից Գիտուն բզեզը:

— Հարց. ի՞նչ է խաչաձև փոշոտումը:

— Երբ մի ծաղկի փոշին միջատը տանում է և փոշոտում մի այլ ծաղկի վարսանդ՝ ստացվում է խաչաձև փոշոտում: Իսկ երբ մի տեսակի բույսը խաչաձևվում է մի այլ տեսակի բույսի հետ, ամեն մի հասուն բզեզ գիտի, որ ստացվում է հիբրիդ:

Ամբողջ դասի ժամանակ Գոնչո բզեզիկը խռմփացնում էր և ոչինչ չլսեց, չիմացավ ինչ է՝ փոշոտում, խաչաձև փոշոտում կամ հիբրիդ: Երբ քնից արթնացավ, բոլոր բզեզները ցրվել էին մարգերում, նեկտար էին անուշ անում: Գոնչոն էլ թռավ, որովհետև շատ քաղցած էր: Իջավ մի կապույտ ծաղկի վրա, գլխապատառ ներս խցկվեց, կնճիթով խմեց նեկտարը, չհասկանալով, որ փոշոտեց այդ ծաղիկը: Որտեղի՞ց իմանար այդ քնկոտը, ողջ դասի ժամին խըռմփացնում էր: Նա ծաղկից-ծաղիկ էր թռչում, չիմանալով, որ փոշոտում է կատարում: Ապա կարմիր ծաղկի հյութը խմեց, քունը տարավ: Այդ կարմիր ծաղիկը կակաչն էր, որի հյութը խմելիս բզեզները հարբում են:

Քամին օրորում էր կակաչը, և Գոնչո բզեզը հանգիստ քնել էր կարմիր անկողնում, չիմանալով, որ վարունգը փոշոտել է սմբուկի հետ, որին շուկայում բադրջան են ասում, լոլիկը՝ բիբարի հետ: Երբ այդ



digitised by A.R.A.R.@

Լուռ հենվել է փայտերին
Ու կանչում է.
— Օգնությո՜ւն,
Եկեք բերքս տարեք տո՜ւն:—
Ու տնքում է վազը խոնարհ
Ոսկեհատիկ խաղողի,
Աչիկներով գոհա՜ր-գոհա՜ր
Սպասում է քաղողի:
Եվ կանչում են դաշտից, այգուց
Բարիքները աշնան ծով,
Ե՛վ հասկերը դեղնակտուց,
Ե՛վ մրգերը մեղրածոր:
Նուռը՝ այգուց, հոնն՝ անտառից,
Ձմերուկը՝ փխրուն մարգից
Եվ դդումը՝ ցանկապատից:
Աշնան ամպն է հիմա խաղում
Գլխին բարձրիկ սարերի,
Ու քաղում ենք մենք մրգերը՝
Ժպիտները արևի:

Նկ. ՎԱՀԱՆ ՔՈՋԱՐԻ

ծաղիկները պտղավորվեցին, հասան՝ ստացվել էին տարօրինակ հիբրիդներ: Վարունգը կիսով չափ սմբուկի էր նման, լոլիկը՝ բիբարի:

Այգեպանը վարունգը կերավ, ասաց.

— Այս ի՞նչ վարունգ է, սմբուկի համ ունի:

Լոլիկը կերավ, ասաց.

— Այս ի՞նչ տեսակ լոլիկ է, բիբարի համ ունի:

Մայր բզեզը վշտից չգիտեր ինչ աներ:

— Փո՛ւչ երեխա,— բզզում էր նա,— դու վարունգը սմբուկից չտարբերեցի՞ր, լոլիկն ու բիբարը իրար հետ ո՞նց փոշոտեցիր: Ա՜խ, խայտառակվեցինք ամբողջ աշխարհում:

Նա Գոնչոյին մի լավ քոթակ տվեց, բայց դա էլ չօգնեց: Գոնչոն առավոտից իրիկուն գլուխը մի ծաղկից հանում, մյուսն էր խոթում: Հիմա էլ չորս բանջարեղեն խառնվեցին իրար, ավելի խայտառակ մի հիբրիդ ստացվեց՝ սմբուկա-վարունգա-լոլիկա-բիբար:

— Այս ի՞նչ տարօրինակ հիբրիդ է,— շշմել էր այգեպանը:

— Երե՜ս առածի մեկը, այդ ո՞նց ես ծաղիկ փոշոտում,— բզզոցը գլուխն էր գցել Մայր բզեզը:— Խայտառակեցիր մեզզզ իշամեղուների, մեղուների, թիթեռների և մյուս միջատների առաջ: Լավ է, կենդանի չէ Պապ բզեզը, վշտից իրեն խմելու կտար, կակաչի նեկտար խմելով հարբեցող կդառնար:

— Հարց,— ասաց Գոնչոն,— իսկ ո՞ւր է մեր Պապ բզեզը:

— Մեր Պապ բզեզին կաչաղակը կուլ տվեց օդում թռչելիս:

Գոնչոն ցանկացավ լավ լինել, բայց քունը տարավ, քնեց: Երբ արթնացավ՝ մարգագետնին մի մեծ օդապարիկ էր իջել: Գոնչոն բարձրացավ օդապարիկի վրա, ման եկավ, նայեց չորս կողմից, ոտքերը փոշոտվեցին: Այդպես էլ օդապարիկի փոշին ոտքերին թռավ ու խցկվեց դդումի ծաղկի մեջ: Դդումի ծաղիկը օդապարիկի փոշով փոշոտվեց, արդյունքը մի հսկայական դդում եղավ՝ տասը շենքի բարձրությամբ, երեսուն վագոնի երկարությամբ:

Այգեպանը կարմանքից քար էր կտրել, գիտուն մարդիկ կատարվածը գիտությամբ բացատրեցին: Բայց ի՛նչ գիտություն, Գոնչոյի արածն էր:

Բերեցին հարյուր տրակտոր, կապեցին հսկայական դդումին, քարշ տվին օվկիանոսի ափ, դրեցին շոգենավի վրա, տարան Ամերիկայում ցույց տալու:

Գիտուններից Գիտուն բզեզը հավաքեց բոլորին, ճառ ասաց.

— Դիրիժաբլը դդումի հետ փոշոտելը, ներեցեք, տգիտություն է: Ընկերնե՛ր, մի՞թե դա դդում էր, քիչ էր մնում օդ բարձրանար:

— Հարց. ի՞նչ բան է դիրիժաբլը:

— Դիրիժաբլը մի դդմանման հսկայական օդապարիկ է, մարդիկ նրա մեջ թեթև գազ լցնելով՝ օդ են բարձրանում: Դդումը չի կարելի դիրիժաբլի հետ փոշոտել, դա, ներեցեք, տգիտություն է:

Մայր բզեզը լաց էր լինում.

— Երդվում եմ, ամբողջ կյանքում ես փոշոտել եմ դդումը դդումի հետ, սմբուկը սմբուկի հետ, վարունգը վարունգի հետ: Թե դա ում է քաշել, չգիտեմ:

Մի անգամ էլ Գոնչոն սմբուկը սև ավտոյի հետ խաչաձև փոշոտեց: Պտուղը սկզբում սմբուկի էր նման, բայց քանի մեծանում՝ ավտոյի էր նմանվում: Ակեր բուսան, շարժիչ բուսավ, շարժիչը աշխատեց, լույսերը վառվեցին և սմբուկի թուփը պոկելով՝ ավտոսմբուկը սլացավ մարգագետնով: Բոլոր բզեզները վախից սրտաճաք եղան:

— Զզզզվեցրեց մեզզզ բզզզեզզզությունից,— բզզում էին բոլոր բզեզները:— Գնանք բռնենք կընճիթը կտրենք:

Գոնչոն այդ որ լսեց, թռավ, փախավ: Մոտիկից մի կաչաղակ էր անցնում: Տեսավ Գոնչոյին, հենց այնպես, ի միջի այլոց, կուլ տվեց քնկոտ, մոռացկոտ, գրված Գոնչո բզեզին:



digitised by A.R.A.R.@





# ՀՈՒՇԵՐ

*ՄԱՐՈ ԱԼԱՋԱՆ*

1921 թվի ամռան սկիզբն էր: Անգլիական (այժմ՝ 26 կոմիսարների) այգին իր ղով գիրկն էր առել հապարավոր պատանիների: Մեր հերթական պարապմունքների ժամն էր: Նկատեցինք, որ Անգլիական այգում, բացի սկաուտապետներ Օնիկից և Արծվիկից, հայտնվել է մի երիտասարդ՝ սպարտակյան տեսքով ու կեցվածքով:

Նա միջահասակ, գանգրահեր, սպիտակադեմ, շատ հաճելի ձայնով մի երիտասարդ էր: Բայց նրա համազգեստը տարբեր էր, գույներն ուրախ և հաճելի էին: Ինձ գրավեց նրա ալ կարմիր ու վառվռուն փողկապը, որով ավելի էր ընդգծվում նրա գեղեցկությունը: Նա հագել էր կանաչավուն բլուզ, մինչև ծնկները հասնող կարճ, կապույտ շալվար: Մեջքը սեղմում էր մի լայն, դարչնագույն կաշվե գոտի՝ վրան մի շարք կարթեր: Մի կարթին ամրացված էր սուլիչը, մյուսին՝ մի մեծ ժամացույց, երրորդին՝ դանակ, չորրորդին՝ մկրատ, հինգերորդին՝ գավաթ և այլն: Նա նման էր որսից վերադարձող որսորդի, որի գոտուց կախված են լինում գույնզգույն թռչուններ: Ձեռքին ուներ կարճ ու բավական հաստ մի փայտ, ես կարծեցի, թե նրա ոտքը ցավում է, բայց նկատեցի, որ չի կաղում: Շատ ուշ հասկացա, որ այդ փայտը պատկոմական համազգեստի մասն է հանդիսանում: Նա էլ ամեն օր ժամը վեցին գալիս էր Անգլիական այգի, կանգնում նույն ծառի տակ, նրա շուրջն էլ հավաքվում էին թե՛ սկաուտական համազգեստով, թե՛ առանց համազգեստի աղջիկներ ու տղաներ: Մի շարք մարմնամարզական վարժություններից հետո, նրանք շրջանաձև նստում էին նույն ծառի տակ, և գանգրահեր երիտասարդը շրջանի մեջտեղ կանգնած, պատմում էր շատ հետաքրքիր և հյութեղ, պատանեկան սրտին շատ մոտ հեքիաթներ: Դրանցով էլ՝ նա գրավեց բազմաթիվ սկաուտ աղջիկ-տղաների, այդ թվում ինձ ու իմ ընկերուհիներին՝ Վերժինե Սինանյանին և Վեհանուշ Սալախյանին: Մի առավոտ մենք՝ այս երեք սկաուտուհիներս, մեր սկաուտապետ Արծվիկ Ալոյանի մոտ չգնացինք, հետաքրքրությունը մեզ մղեց դեպի այդ կարմիր փողկապավոր երիտասարդը:

Նա մեզ էլ մյուսների հետ շարք կանգնեցրեց և նրա սուլիչի ռիթմիկ տակտի տակ մենք երկար քայլեցինք:

Սկիզբը՝ 1971 թ. № 9։

Մի քանի մարմնամարզական վարժություններից հետո, նա մեզ հավաքեց նույն սաղարթախիտ ծառի տակ և սկսեց նորից հետաքրքիր հեքիաթներ պատմել և նույնքան հետաքրքիր խաղեր կազմակերպել:

Հետագայում իմացանք, որ այդ հեքիաթները, որոնց «Կարմիր հեքիաթներ» անունն էր նա տվել, իր ստեղծագործություններն էին, դրանց նյութը նա վերցնում էր մեր պատկոմական առօրյայից, ճոխացնում, գեղեցկացնում և հեքիաթային դարձնում, ու դրանցով նոր շունչ ու ոգի հաղորդում մեզ՝ պատանիներիս, ոգևորում ու քաջալերում:



Անցան ամիսներ: Գանգրահեր երիտասարդն էլ ունեցավ իր մշտական բանակը (500—600 հոգի): Ունեցանք նաև մեր թմբուկը: Մեր առաջին թմբկահարը եղավ Եպրաքսիա Բաբլոյանը: Մի օր էլ մենք գանգրահեր երիտասարդի ղեկավարությամբ, Բաբլոյանի թմբուկի ռիթմիկ տակտի տակ, շարժվեցինք դեպի ամառային ակումբը, որը գտնվում էր Աբովյան փողոցի ներկա հանրախանութի կողքին: Այստեղ գանգրահեր երիտասարդը՝ Ստյոպա Մանուկյանը, հայտարարեց.

— Սիրելի՛ պատկոմներ, այսուհետև ինձ այլևս Անգլիական այգում չսպասեք, մեր պարապմունքները այստեղ կլինեն: Ամեն օր առավոտյան ժամը 6-ին ինձ այստեղ կգտնեք:

Հավանաբար առաջին անխուսափելի բախո՞ւմն էր տեղի ունեցել նրա՝ պատկոմական կազմակերպության անդրանիկ ղեկավար Ստյոպա Մանուկյանի և սկաուտապետների միջև: Այդ մասին նա մեզ ոչինչ չասաց:



Նույն թվականի ամռանն էր. օրը կիրակի, տաք և արևոտ: Ես՝ գլուխս բարձր, հպարտ ու ինքնահավան անցնում էի Աբովյան փողոցով: Դեմս ելավ սկաուտապետ Արծվիկ Ալոյանը:

— Աղջի՛կ, կանգնի՛ր,— հրամայեց նա:

Ես կատարեցի հրամանը: Սակայն պատվի առա ոչ թե սկաուտական, այլ՝ պատկոմական ձևով. հինգ մատներս միացրած, ձեռքս բարձրացրի գլխիցս վեր (իսկ սկաուտականը՝ երեք մատները միացրած, ճկույթը ծալած, բութ մատը ճկույթի վրա դրած): Նա սաստիկ վրդովված, սկսեց ինձ նախատել.

— Սկաուտական համազգեստով պատկո՞մ ես դարձել, հա՞,— դեռ կոմերիտական լինելուս մասին չգիտեր: Եվ մի շառաչուն ապտակ իջավ աջ այտիս: Այնուհետև շտապ ու վրդովված իր գոտուց արձակեց

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# «ԻՆՉՈ՞Ւ ԵՆ ՏՂԱՆԵՐԸ ՊԱՍԻՎ»

Երևանի № 92 միջնակարգ դպրոցի 7-րդ Ա և 8-րդ Գ դասարանների աշակերտները պետք է բանավիճեին «Ինչո՞ւ են պասսիվ տղաները» հարցի շուրջը: Նշված օրը 7-րդ դասարանցիներից ոչ մի տղա չներկայացավ: «Գանք լսենք, թե ինչպե՞ս են աղջիկները բոլորի ներկայությամբ մեզ խայտառակում»,— մտածեցին նրանք:

...Ու բոլորն էլ դասերից հետո... փախան:

Հանդիպման համար նոր օր ու ժամ նշանակվեց: Այս անգամ խուսափել չկարողացան: Վերջապես բանավեճը կայացավ: Երկու դասարանների տղաները նստել էին մի շարքում, աղջիկները՝ մյուս:

Սկզբում բոլորը լուռ էին, բայց հետո տղաները նույնպես աշխուժացան, երբ աղջիկներն սկըսեցին մեղադրանքներ ներկայացնել նրանց:

Ի՞նչ ասացին աղջիկները.— Տղաները պասսիվ են, և ամենացավալին այն է, որ նրանք նաև վատ են սովորում: Ինչո՞ւ են վատ սովորում: Դրա պատճառը, մեզ թվում է, այն է, որ նրանք շատ մեծ կարծիք ունեն իրենց մասին: «Եթե ուզենք, ցանկացած ժամանակ մի անգամ կարդալով ձեզանից լավ կպատասխանենք դասը, իսկ դուք գնացեք և ճզնեք»,— հաճախ կարելի է տղաներից լսել այս խոսքերը: Ավելորդ ինքնավստահությունն, որը վնասում է և՛ սովորելուն, և՛ մյուս գործերին: Մեր ուսուցիչներն էլ հաճախ որևէ տղայի մասին ասում են.

— Ընդունակ է, որ ուզենա՝ ամեն ինչում առաջավոր կլինի:

Դասարանում, տվյալ պահին,

*փոքրիկ դանակը: Կտրեց փողկապիս վրա փաթաթված խաչաձև շնուրը, հափշտակեց փողկապս, պատռեց բլուզս, որ սկաուտական էր, ու համարում էր, թե իրավունք ունի պատռելու, և հաղթական քայլերով հեռացավ: Աբովյան փողոցը աչքիս առջև մթնեց. այտերս այրվում էին, շշմել ու կանգնել էի տեղումս: Մեկ էլ սթափվեցի, տեսա շուրջս խմբված մարդկանց, հարցեր էին, որ ամեն կողմից տեղացին գլխիս.*

*— Աղջի՛, Արծվիկն ինչո՞ւ քեզ ապտակեց:*

*— Աղջի՛, Արծվիկն ինչո՞ւ փողկապդ կտրեց:*

*— Փոքրի՛կ, պզեստդ ո՞վ պատռեց:*

*Ոչ մեկին ոչ մի պատասխան տալ չկարողացա: Շշկլած, շփոթված ճեղքեցի ամբոխը և սլացա դեպի մանկատուն:*

*Արծվիկի ապտակը ինձ սթափեցրեց: Ես հասկացա, թե ի՛նչ է նշանակում սկաուտական համազգեստով կոմերիտական կամ պատկոմ դառնալը: Ես վերջնականապես հասկացա, որ սկաուտներն ու պատկոմները տարբեր մարդիկ են և տարբեր նպատակների ու գաղափարների են ծառայում: Այնուհետև ես խոր ատելությամբ լցվեցի դեպի Արծվիկն ու սկաուտական համազգեստը: Ամեն անգամ սկաուտական շարքերին հանդիպելիս, նրանց վայրացնելու համար, ասում էի այն ժամանակ տարածված երգի տողերը.*

*Սկաուտ, սկաուտ սևերես,*
*Կատուն լիզի քո երես:*

*Ապա փախչում էի ու թաքնվում:*

*Մինչ այդ Ստյոպա Մանուկյանը գրեթե մենակ էր գործում: Մենք բավական ուշ հասկացանք և նրա հետ միասին գիտակցական պայքարի ելանք սկաուտների դեմ: Այդ պայքարի ընթացքում սկաուտներից շատերը երես դարձրին սկաուտական կազմակերպությունից, դարձան պատկոմներ: Պատկոմական շարքերը գնալով խտանում, իսկ սկաուտականը նոսրանում էր: Պատկոմների թիվը հասնում էր հազարի, այդքան մարդկանց միակ ղեկավարն ու կազմակերպիչը Ստյոպա Մանուկյանն էր: Նա ինքն էր կատարում մարմնամարզական, քաղդաստիարակչական և մանկավարժական բոլոր աշխատանքները: Նա ինքն էր բանաստեղծություններ գրում, ձայնագրում և մեզ սովորեցնում:*

*Հեղափոխական բանաստեղծություններից կատ, գրում էր նաև մանկավարժական հոդվածներ, մանկական բանաստեղծություններ, որոնք տպագրվում էին «Պատկոմ» ամսագրում: Շուտով նրան օգնության եկավ Արտո Բկնունին, որին ուղարկել էր կոմերիտմիության Կենտկոմը: Արտոն վարում էր քաղդաստիարակչական, իսկ Ստյոպան ֆիզդաստիարակչական և մանկավարժական աշխատանքները:*

*Արտո Բկնունին մեր կազմակերպության երկրորդ դեմքն էր, որը փայլում էր իր ծայր աստիճան համեստությամբ, քաղաքական պատրաստականությամբ ու եռանդուն գործունեությամբ:*



digitised by A.R.A.R.@

# ՄԱՐԴԸ ԵՎ ԽՈՍՔԸ

ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ

ինավուրց Հնդկաստանի «Մանուի օրենքում» կարդում ենք. «Վշտաբեկ վիճակում իսկ չի կարելի այնպիսի խոսք ասել, որ խոցի ուրիշներին... և այնպիսի խոսք ասել, որ սարսափեցնի ուրիշներին...»

Հինավուրց Արևելքում ասում էին, թե խոսքը կարող է մարդ սպանել: Մեր ժամանակներում կատարված հետազոտությունները հաստատում են այդ: Պարզվում է, որ սրտանոթային սիստեմի շատ հիվանդություններ կարող են ավելի խորանալ և նույնիսկ առաջանալ վիրավորանքի, դառնության, վիրավորական խոսքի պատճառած ապրումներից: Զուր չէ, որ Ի. Պ. Պավլովը մարդու առողջության պահպանման գործում այնքան մեծ նշանակություն էր տալիս լավ տրամադրությանը:

«Ես բժիշկ եմ,— գրել է լենինյան մրցանակի դափնեկիր պրոֆեսոր Ֆ. Ուգլովը,— և իմ խընդիրն եմ համարում պայքարել հանուն երկարակեցության, ուրեմն և պայքարել այն ամենի դեմ, ինչ կրճատում է մարդկային կյանքը: Այս հոդվածում ես կուզեի կանգ առնել նման պատճառներից միայն մեկի վրա: Այդ պատճառը կոպտությունն է, որի վնասակար ազդեցությունը նյարդային համակարգի ու մարդու առողջության վրա մենք դեռևս թերագնահատում ենք: Մտաբերեք, մի՞թե մեզ չի պատահել տեսնել մարդու, որի դեմքը փոխվել է կոպիտ խոսքից և նա հեռացել է սիրտը բռնած:

Դառնությամբ պիտի խոստովանենք, որ մարդիկ հաճախ միմյանց հանդեպ թույլ են տալիս ան-



նրբանկատ վերաբերմունք և նույնիսկ վիրավորանք: Կոպտությունն ու վիրավորանքը բարոյականցություն են: Բայց դրանք ոչ միայն նվաստացնում են մարդուն, այլև ծանր ազդեցություն են ունենում նրա առողջության վրա: Դա անդրադառնում է նյարդային համակարգի վրա, բայց ամենից առաջ տուժում է սիրտը»:

Զուր չէ ակադեմիկոս Ա. Բոգոմոլեցը գրել, թե. «Երկարակեցության պայմաններից մեկը կիրթ և լավ վերաբերմունքն է մարդկանց հանդեպ»:

Կոպտությունը տեղ չպիտի ունենա մեր երկրում: Ոչ միայն այն պատճառով, որ կոպիտ խոսքը չի կարող լավ միջոց լինել մարդկանց հաղորդակցության համար, այլև այն պատճառով, որ կոպիտ, չար խոսքը ամենաթանկ բանի՝ մարդկային կյանքի թշնամին է:

Զուսպ մարդը երբեք իրեն թույլ չի տա հայհոյանքին հայհոյանքով պատասխանել: Սովորաբար նա գտնում է պատասխանի այլ, և, ի դեպ, ավելի ազդու ձևեր: Պատմական հետաքրքիր միջադեպ է բերում Ստեֆան Ցվայգը: Մի անգամ Նապոլեոնը ողջ պալատի ներկայությամբ գոռում է Թալեյրանի վրա, նվաստացուցիչ լուտանքներ է նետում նրա երեսին՝ անվանելով գող, երդմնազանց, մի մարդ, որը հանուն փողի կարող է ծախել հարազատ հորը: Թալեյրանը, այդ խորամանկ պալատականը, Ֆրանսիայի առաջին դիվանագետը, կանգնած է անշարժ, գոռոզ տեսքով, կարծես չի էլ լըսում լուտանքների այդ հեղեղը: Երբ Նապոլեոնը լռում է, Թալեյրանը, շարունակելով անխոս մնալ,

---

այդ աշակերտը իրեն շատ շոյված է զգում: Դե, եթե ուսուցիչն իր մասին լավ կարծիքի է, կարելի է չսովորել: Կարևորն այն է, որ ինքն ընդունակ է և եթե ուզենա...

Բայց արի ու տես, որ այդ ընդունակներից շատ քչերն են լավ սովորում: Ավելին, նրանց մեջ խորանում է ծուլությունն ու անտարբերությունը:

Ի՞նչ պատասխանեցին տղաները.— Բողոքեցին, ասելով, որ կատարվող գործերում իրենց հետաքրքրող քիչ բան կա:

— Մեզ ավելի շատ գործնական հանձնարարություններ թող տան, ձևականը, զուտ աղջկականը մեզ քիչ է հետաքրքրում,— ասում էին նրանք:

Իսկ թե ինչո՞ւ են վատ սովորում, նրանցից ոչ ոք չկարողացավ պատճառաբանել:

ԷԴՎԱՐԴ ՄԱԼԽԱՍՅԱՆ

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.— Ձեր դասարաններում, ջոկատներում, դրուժինաներում քննարկեք այս հարցը, լրջորեն մտածեք, զրուցեք ինքներդ ձեզ հետ, ձեր ուսուցիչների հետ և ապա գրեք մեզ, թե ձեզանից ով ինչ բացատրություն է տալիս այս երևույթին: Երևանի 92-րդ դպրոցի 7-րդ և 8-րդ դասարանցիների այս վեճը եկեք շարունակենք «Պիոներ» ամսագրի էջերում:*



digitised by A.R.A.R.@

# ԴԵՄ ՀԱՆԴԻՄԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

կաղալով քայլում է դեպի նախասենյակ և այնտեղից մի սպանիչ խոսք է նետում, որ խոցում է ավելի ցավագին, քան Նապոլեոնի երկարաբանությունը: Նա ասում է. «Որքան ցավալի է, որ այսպիսի մեծ մարդը այսքան վատ է դաստիարակված»,— ասում է և, թիկնոցը վրան առնելով, դուրս է գալիս պալատից:

Ինքնատիրապետման նման մի օրինակ էլ Պերիկլեսն է տվել: Պլուտարքոսը պատմում է, թե մի անգամ սանձարձակ ու անազնիվ մի մարդ, ամբողջ օրը հայհոյում ու անարգում է Պերիկլեսին, բայց վերջինս մազաչափ իսկ ուշադրություն չի դարձնում նրա վրա և շարունակում է զբաղվել իր գործով: Երեկոյան, երբ արդեն մթնել էր, Պերիկլեսը ստրուկին հրամայում է վառվող ջահով մինչև տուն ուղեկցել այդ մարդուն: Այս վարմունքը, ինչպես և Թալեյրանի ասած միակ նախադասությունը, լուտանքների առատ հեղեղից ավելի ուժեղ էին:

Ի դեպ, հաճելի է նշել, որ կան ժողովուրդներ, որոնց բառապաշարում չկան լուտանքի և հայհոյական խոսքեր: Օրինակ, մալայացուն չի կարելի ավելի խորը վիրավորանք հասցնել, քան ասել. «Ինչպե՞ս չես ամաչում» կամ՝ «Լավ չես դաստիարակված»:

Համենայն դեպս հայհոյանքի զենքը լավագույնը չէ, և դրան տիրապետելն էլ մեծ պատիվ չէ:



Ահա, թե ինչու հաճախ խնդիրն այն է, որ թույլ չտաս վզիդ փաթաթվի նման... «զենքը»:

Լինում է, սակայն, այնպիսի մի վիճակ, երբ լռել՝ կնշանակի վարվել վախկոտի նման, ստորաբար: Խոսքը վերաբերում է այն դեպքերին, երբ ձեր ներկայությամբ վիրավորում կամ վատ են խոսում մի մարդու մասին, որին դուք հարգում եք, կամ մի բանի մասին, որ սրբություն է ձեզ համար: Նըման պարագայում լռել՝ կնշանակի դավաճանել մարդուն կամ գաղափարին:

Մի անգամ, պրուս-շվեդական պատերազմի ժամանակ, նովգորոդցի վաճառական Իգոլկինը գերի է ընկնում շվեդներին: Նա գիտեր շվեդերեն և լսում է, թե ինչպես շվեդ ժամապահ զինվորները հայհոյում են Ռուսաստանն ու Պետրոս Առաջինին: Վաճառականը պահանջում է լռել: Զինվորները հրաժարվում են. Իգոլկինը կանչում է ենթասպային, գանգատվում է նրան և խնդրում արգելել նրանց վիրավորել իր հայրենիքը: Ենթասպան ծիծաղում է գերու երեսին: Այդ ժամանակ վաճառականը, որ բարձրահասակ և ուժեղ մարդ էր, մոտենում է զինվորներին, խլում նրանցից մեկի հրացանը և սպանում երկուսին էլ:

Իգոլկինին շղթայակապ են անում: Շվեդական դատավորները, որոնց հանձնարարվում է այդ աննախադեպ գործը, չեն իմանում ինչպես վարվել: Այդ մասին պատմում են Կարլ XII-ին: Շվեդիայի թագավորը կարգադրում է իր մոտ բերել ռուսին և ապա նրան ուղարկում է հայրենիք: Պետրոս Առաջինին հղած նամակում Կարլ XII-ը շնորհավորում է նրան, որ այդպիսի հպատակներ ունի:

Երբ Լոնդոնում Գերցենի տանը ինչ-որ մեկը վատ է խոսում լեհերի մասին, Գերցենը զայրույթով ընդհատում է նրան.

— Ես թույլ չեմ տա իմ տանը վատ խոսել Լեհաստանի մասին: Դա առավել անքաղաքավարություն է, քանի որ այդ երկիրը պարտված է և այս սեղանի շուրջ լեհեր են նստած:

1908 թվականին Վարշավայի բանտում նստած էր մի մարդ, որի



արձանը այսօր դուք կարող եք տեսնել Մոսկվայում՝ Ձերժինսկու հրապարակում: Մի անգամ նա լըսում է, որ վիրավորում են քաղաքական բանտարկյալ մի կնոջ: Թվում է, թե այդ պահին անկարելի էր նրան պաշտպանել, ընկերները վանդակի ետևում էին, ինքը՝ թշնամու իշխանության տակ: Բայց Ձերժինսկին կարողանում է այդ անել: Նա ծեծում է իր խցիկի դուռը և երբ ոստիկանը մոտենում է, նա՝ բանտարկյալը, նախատում է նրան կոպիտ վարմունքի համար:

Իհարկե, հաճախ այս կամ այն մարդը արժանի է լինում խիստ պարսավանքի, խայթող խոսքի: Խոսքն այդ մասին չէ: Խոսքը ներքին ազնվության և արիության մասին է, այն մասին, որ ամեն ոք արի ու ազնիվ պիտի լինի իր խղճի առաջ և թույլ չպետք է տա իր ներկայությամբ վիրավորել ո՛չ մարդկանց, ո՛չ էլ այն գաղափարները, որոնց հավատարիմ է նա:

Թարգմ. Ս. ԱՅՈՒՆՑԻ



digitised by A.R.A.R.@

# ՄԵՐ ԹԱՆԿԱԳԻՆ



Անտառակտցար

*Խոսքը չվող թռչունների մասին է: Նրանք աշնանը մեծ և փոքր երամներով չվում են տաք երկրներ ու գարնան հետ վերադառնում Հայաստան:*

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

*Տեղ են հասնում, ցրվում մեր երկրով մեկ և ամեն մեկն իրեն համար բնական միջավայրում բույն է շինում ու ձագ հանում: Ապա երբ ձագերը մեծանում են և ամրանում են նրանց թևերը, նորից հավաքվում են, երամներ կազմում ու իրենց սերնդի հետ չվում դեպի հարավ:*

*Ինչո՞ւ են չվում, չի կարելի՞, որ ձմեռն էլ մնան մեզ մոտ: Ո՛չ, չի՛ կարելի: Կան թռչուններ, որոնք սովոր չեն ցրտի, իսկ մեր երկիրը խիստ ձմեռներ ունի: Կան թռչուններ էլ, որոնք ցրտից շատ չեն նեղվում, բայց երբ նրանց ուտելիքը թաղվում է ձյան տակ, քաղցի չմատնվելու համար գնում են այնպիսի երկրներ, ուր ձմեռ չկա: Դաշտային դռլոններն, օրինակ, գնում են արաբական երկրները, լորը՝ Աֆրիկա, բադերի մի քանի տեսակներ, ինչպես և մեծ ու փոքր արոսները Արաքսի հովտով իջնում են Մուղանի (դաշտային Ղարաբաղ) մեղմ ու կերառատ դաշտերը:*



Հավփալ

*Իսկ գարնանը նույն ճանապարհներով նույն վայրերն են վերադառնում մեր երկրից քոչած բազմաթիվ ու բազմատեսակ թռչունները:*

*Հավփալները տեղավորվում են անտառներում: Ճահճային կտցարները ցրիվ են գալիս ճահիճներում: Կիվիվները գերադասում են Սևանի արևելյան եզրերի նոր առաջացած ճահիճները: Պատահում են նաև Ամասիայի, Ստեփանավանի, Այղր լճի թաց ու ճահճոտ հողերում: Անտառակտցարը, ինչպես անունից էլ է երևում, սիրում է անտառները, անտառներով հոսող ջրերը, որոնց մոտերքում էլ հյուսում է իր բույնը: Հոկտեմբերյանի, Սադարակի տափաստաններում երբեմն երևում են հսկայամարմին թռչունների երամներ: Նայում ես՝ կարծես նոր կանաչած արտերի մեջ փռված արածող ոչխարի հոտ լինի: Մեծ արոսներն են: Նրանց մեջ մինչև 16 կգ քաշ ունեցող աքլորներ են հանդիպում:*

## ՍԵԹՆ ՈՒ ԱՐԱՀԵՏԸ

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

Սարալանջին
Նստած Սեթը,
Ասաց.— Բռնեմ արահետը,
Իջնեմ ձորը,
Մտնեմ գետը,
Գետից անցնեմ,
Բարձրանամ՝ վեր,
Դեպի գագաթ,
Դեպի ամպեր:

Բայց ամպերը
Որոտացին
Ու լեռները
Դղրդացին:
— Այդ ո՞ւմ մտքով
Անցավ,— ասին,—
Լեռան մասին,
Ամպի մասին:

— Ես վախկոտ չե՛մ,—
Գոռաց Սեթը,—
Վկա է այս
Արահետը,
Հենց որ մի քիչ էլ մեծանամ,
Կբարձրանա՛մ,
Կբարձրանա՛մ:



digitised by A.R.A.R.@

# ՀՅՈՒՐԵՐԸ



Լոր

Նրանք մեկ մոտ ժամանակավոր հյուրեր են, որ հանգստանալուց հետո շարունակում են իրենց ճանապարհը դեպի իրենց բնակալման վայրերը, դեպի հյուսիս:

Արոսների նման մեր երկրով անցնում են նաև կռունկները, լոռհավերը, կարմիր ուրուրները և ուրիշ թռչուններ: Երբեմն գեղանի կարապներ և երկարավիզ ու երկարոտ կարմրաթևիկներ (ֆլամինգո) են երևում Սևանի ափերին: Դրանք բոլորն էլ մեր հյուրերն են, հյուրերի նման էլ պետք է պատվով ընդունենք և պատվով ճամփու դնենք:

Արաքսի հովիտը թռչունների չուի ճանապարհներից մեկն է: Այդ հովտով են գալիս անցնում մեր թևավոր բարեկամներից շատերը: Բայց շատերն էլ գալիս մնում են մեր երկրում, բույն են դնում ու ձագեր հանում: Դրանցից է լորը: Լորը գալիս է Աֆրիկայից, ուր անց է կացրել ձմեռը: Գալիս են, ցրիվ են գալիս կանաչած աշնանացան արտերում ու խոտհարքներում, բույն են շինում գետնին, մի թաքուն տեղ և իրենց անուշ կանչերով գեղեցկացնում են մեր բնությունը:



Կիվիվ

— Պա՛դ-պադո՛ւկ, պա՛դ-պադո՛ւկ...

Ինչ կարգով գալիս են, այն կարգով էլ աշնանը ետ են վերադառնում նորից այնտեղ, որտեղից եկել են:




# ՋՐՀԵՂԵՂԻ ԼԵԳԵՆԴԸ

Երկրագնդի գրեթե բոլոր ժողովուրդները լեգենդներ ունեն ջրհեղեղի մասին: Այդ լեգենդները հատկապես շատ են օվկիանոսի ափերին ապրող ժողովուրդների մոտ, որոնք հաճախ են տուժել ջրհեղեղներից: Մարդկությանը ծանր աղետներ բերող այդ մեծ հեղեղումների պատճառները երկրի կեղևը տեղաշարժող երկրաշարժերն են, ավերիչ փոթորիկները, թայֆունները, որոնց առաջացրած ալիքների բարձրությունը հասնում է 15—40 մետրի, շարժման արագությունը՝ ժամում մինչև 280 կմ:

19-րդ դարի երկրորդ կեսին Խաղաղ օվկիանոսում ջրասույզ եղավ Տունակի կղզին (Կուկի կղզիների խմբից): Վաղ առավոտյան այդ կղզու ձկնորսները ծով դուրս եկան: Բաց ծովում նրանք հանդիպեցին մի քանի երկար ու խոշոր ալիքների... Երբ ձկան հարուստ որսով երեկոյան վերադարձան, զարմանքով տեսան, որ կղզին չկա: Կղզին խորտակվել էր: Ջրի հարթ մակերևույթը ծածկում էր այն տեղը, որ մի քանի ժամ առաջ 13 հազար մարդ էր ապրում:

1883 թ. մայիսի 20-ին ահռելի որոտով ժայթքեց Հնդկական օվկիանոսում գտնվող Կրակատաու կոչվող հրաբուխը: Պայթյունի ուժից կղզին կործանվեց ու սուզվեց օվկիանոսի հատակը: Նրա բարձրացրած հսկա ալիքները ողողեցին Ճավա և Սումատրա կղզիները, որի հետևանքով զոհվեց ավելի քան 36 հազար մարդ:

17-րդ դարում Յամայկա կղզին (Կարաիբյան ծովում) դարձավ ծովահենների ապաստարան: Նրանց շտաբ բնակավայրը Պորտ-Ռոյալ մեծ քաղաքն էր: Դա նոր աշխարհի ամենահարուստ քաղաքներից մեկն էր: Ծովահենները այստեղ էին բերում իրենց հափշտակած ավարը: 1692 թ. հունիսի 7-ին հանկարծ քաղաքը խորտակվեց, քաղաքի



383-Վ

digitised by A.R.A.R.@

## ՀԱՎԱՏԱՐԻՄ ՆԻՖ-ՆԻՖԸ ԵՎ ՆԱՖ-ՆԱՖԸ

Երբ անգլուհի Կերոլ Բլեկին նվիրեցին երկու հմայիչ խոճկոր, նա որոշեց՝ ի պատիվ «Երեք խոճուկ» նշանավոր հեքիաթի՝ խոճկորներին անվանել Նիֆ-Նիֆ և Նաֆ-Նաֆ: Խոճկորները պատվով արդարացրին իրենց անունները:

Երբ նրանց տիրուհի Կերոլ Բլեկը մերձքաղաքային ֆերմայից տեղափոխվեց Լոնդոն, Նիֆ-Նիֆը և Նաֆ-Նաֆը համարձակորեն ճամփա ընկան նրա հետքերով. հո չէի՞ն մնալու գյուղում մենակ: Ով ծանոթ է հեքիաթին, գիտի, որ Գորշ գայլի հետ հուզակավոր հանդիպումից հետո խոճկորները հասկացան քարե տնակի առավելությունը այլ տնակների համեմատ:

Դժվար է պատկերացնել Կերոլի կարմանքը, երբ մի անգամ առավոտյան նա իր տան շքամուտքի մոտ տեսավ խիղախ Նիֆ-Նիֆին և Նաֆ-Նաֆին:






## ՓՈՍՏԱՏԱՐ ՋԱՅԼԱՄԸ

Բոտսվանայի (Աֆրիկա) Ջուշվե և Կուշվե բնակավայրերի միջև հեռախոսային կապ չկա: Չի երթևեկում նաև ավտոբուս: Հասկանալի է, որ դժվար է ամեն օր 20 կմ քայլել: «Միջքաղաքային» կապի խնդիրը Ջուշվե և Կուշվե քաղաքների բնակիչները լուծեցին՝ ելնելով տեղական պայմաններից, և, պետք է խոստովանել՝ բավական հաջող: Նրանք վարժեցրին ջայլամին. ջայլամի վզից կախում էին պայուսակը և այն լցնում նամակներով: Քսան րոպե անց, արտասովոր սուրհանդակը փոշու ամպեր բարձրացնելով՝ ժամանում էր նշանակված վայրը: Ասում են, որ ջայլամին վստահում են նաև դրամական փոխադրումներ: Թռչունի ազնվությունը կասկածանքի տեղիք չի տալիս:

---

տեղում անդունդ գոյացավ, իսկ ծովից քաղաքի վրա գրոհեցին հսկայական ալիքները: Մի քանի րոպեում Պորտ-Ռոյալ մեծ ու հարուստ քաղաքը ընդմիշտ թաղվեց ծովի խորքում:

Քաղաքի խորտակման վայրում 1959 թ. Ամերիկյան աշխարհագրական ընկերության արշավախումբը ծովի հատակից հանեց ոսկե ժամացույց, որը պատրաստել էր Ամստերդամի վարպետներից մեկը: Ժամացույցի սլաքները կորել էին, բայց ռենտգենյան ճառագայթների միջոցով հաջողվեց որոշել, որ ժամացույցը կանգնել է ժամը 11 անց 43 րոպեին: Դա քաղաքի կործանման ժամն է:

1961 թվականի սեպտեմբերի 16-ին Ճապոնիայի վրա պայթեց Նենսի թայֆունը, որ ուներ ժամում 252 կմ արագություն: Թայֆունը կործանեց 1600 շենք, հեղեղեց ու ջրածածկ արեց 20 հազար տուն: Այդ աղետից տուժեց 650 հազար բնակիչ: Ծովի ալիքները 12-բալանոց էին:

Դարեր շարունակ մարդկությանը անհայտ էին այդ տարերային խոշոր աղետների իսկական պատճառները: Եվ ահա կրոնի բարեպաշտ ծառաները նույնպես ունենալով կիսատ-պռատ տեղեկություններ ավելի վաղ ժամանակներում եղած ջրհեղեղների մասին, հորինել են համաշխարհային ջրհեղեղի լեգենդը... Սակայն կարո՞ղ էին նրանք պատկերացնել, թե ինչ ահռելի չափեր պետք է ունենար Նոյի տապանը՝ միլիոնավոր տեսակի զույգ կենդանիներ, թռչուններ և այլ արարածներ տեղավորելու համար:

Պարզ հաշվումները ցույց են տալիս, որ Նոյի տապանը, եթե իրոք գոյություն ունենար, ապա նրա երկարությունը մի քանի հազար կիլոմետր պետք է լիներ. իհարկե, նավի երկարության 1/3-ին համապատասխան էլ՝ լայնությունը: Հնարավո՞ր էր այդպիսի նավ-տապանի գոյությունը:

Իհարկե, ոչ... պարզ է, որ ջրհեղեղի առասպելը թխված է անշնորհք կերպով:

*ԱՐՇԱԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ*



digitised by A.R.A.R.@

## ՊԱՐԶ ԽՈՍԵԼՈՒ ԱՐՎԵՍՏԸ




Ֆրանսիացի հայտնի ֆիզիկոս Լանժևենը պարզ խոսելու բացառիկ ընդունակություն ուներ: Նա ամենաբարդ հարցերը կարող էր բոլորին հասկանալի ձևով մեկնաբանել: Մի անգամ Ֆրանսիայի գիտությունների ակադեմիայում նա փայլուն զեկուցում է կարդում ժամանակակից ֆիզիկայի խնդիրների մասին: Այդ զեկուցումը կարելի էր համարել տարրական կրթություն ունեցողի լավագույն շարադրության օրինակ:

Զեկուցումից հետո բոլորը շրջապատում են նրան և խնդրում բացատրել այդպիսի պարզության հասնելու գաղտնիքը: «Դա շատ հեշտ է,— պատասխանում է գիտնականը,— դասախոսելիս ես փնտրում եմ ամենաբութ դեմք ունեցողին և նրան էլ սկսում եմ բացատրել»:

## ԱՆՏԻԿ ԱՇԽԱՐՀԻ ԽՈՇՈՐԱԳՈՒՅՆ ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾԸ

Ֆիդիասը՝ Հին Հունաստանի հռչակավոր քանդակագործը, ապրել և իր չգերազանցված դասական գործերը ստեղծել է Աթենքի ստրկատիրական դեմոկրատիայի ժամանակաշրջանում, մեր թվարկությունից հինգ դար առաջ:

Ֆիդիասի կերտած Զևս աստծո արձանը, նրա ժամանակակից գրողների միահամուռ վկայությամբ, համարվել է աշխարհի յոթ հրաշալիքներից մեկը: Զևսի մարմինն ու գահը Ֆիդիասը պատրաստել է եբենոսափայտից, ոսկուց, թանկարժեք քարերից և վարդաբել դիցաբանությունից վերցրած տարբեր տեսարաններով:

Ախաիայի շրջանի Պիլինի քաղաքում Ֆիդիասը կերտեց Աթենաս աստվածուհու, իսկ Իլիս քաղաքում՝ Աֆրոդիտե աստվածուհու արձանները՝ երկուսն էլ ոսկուց և փղոսկրից:

Ֆիդիասին է հանձնարարվել Աթենքի Ակրոպոլիսի և Պարթենոնի կառույցների գեղարվեստական զարդարման ընդհանուր կազմակերպումն ու ղեկավարությունը:

Անտիկ աշխարհում հիացմունքով և մեծ գովեստով էին արտահայտվում Աթենաս աստվածուհու արձանի մասին, որը Ֆիդիասը քանդակել էր ոսկուց և փղոսկրից՝ հենց Պարթենոնի մեջ, մ. թ. ա. 438 թվին: Արվեստի այս հոյակապ կոթողը հռչակավոր քանդակագործին համընդհանուր ճանաչման և փառքի հետ մեկտեղ շատ դառնություններ բերեց: Թշնամիները Ֆիդիասին մեղադրեցին արձանից փղի ժանիքներ գողանալու մեջ և նրան դատի տվեցին: Ճիշտ է, Ֆիդիասին արդարացրին, սակայն, նրա թշնամիները չհանգստացան: Այս անգամ նրանք օգտագործեցին այն հանգամանքը, որ Ֆիդիասը Աթենաս աստվածուհու վահանի վրա փորագրել էր իր և Պերիկլեսի դիմանկարները: Այդ համարվեց սրբապղծություն և, ինչպես Պլուտարքոսն է գրում, Ֆիդիասին դատապարտեցին բանտարկության:

Անտիկ աշխարհի մեծ դեմոկրատ-քանդակագործ Ֆիդիասի անգերազանց արվեստը հսկայական ազդեցություն թողեց քանդակագործների հետագա բազմաթիվ սերունդների վրա: Ֆիդիասի անմահ գործերը, որ անգնահատելի արժեք են ներկայացնում, իրենց մեջ կրում են դեմոկրատիայի և անտիկ աշխարհի լավագույն իդեալների և ավանդույթների դրոշմը:

*Հունարենից թարգմ. Ս. ՋԵՐՋԵՐՅԱՆԸ*

## ԱՆՁՐԵՎԻՑ ՀԵՏՈ

*ԹԱԹՈՒԼ ԲՈՒՐՋՅԱՆ*

Գոռգոռացին ամպերը,
Դողդողացին ծառերը,
Արձագանքը շանթերի
Գնաց ընկավ ձորերը:
Թռչունները վախեցած՝
Իրենց բները մտան,
Եվ մի գառնուկ ուշացած՝
Վազեց իր մորը գտավ:
Անձրևն եկավ ու անցավ,
Ծարավ արտը հովացավ.
Անտառի խոր ծմակում
Քնած եղնիկն արթնացավ:
Արևն ասաց.— Տե՛ղ բացեք,
Պիտի կապեմ ծիածան:—
Եվ ամպերը մեկ առ մեկ
Հորիզոնից հեռացան:



digitised by A.R.A.R.@

## Ճ Ա Ն Ա Չ Ի՛ Ր Ե Վ



Նշտարաձև ջղախոտ

Գոյություն ունեն ջըղախոտի բազմաթիվ տեսակներ, որոնցից դեղագործական նպատակներով օգտագործում են միայն երեքը: Դրանք են՝ մեծ ջղախոտը, միջինը և նըշտարաձևը: Այս երեք տեսակներն էլ վայրի վիճակում աճում են Հայաստանի գրեթե բոլոր շրջաններում:

Բազմամյա խոտաբույսեր են, պարզ, անտերև ցողուններով,

### ՋՂԱԽՈՏ

*(Եզան լեզու)*

և տերևների մերձարմատային վարդակով: Պատկանում են ջղախոտազգիների ընտանիքին:

1. Մեծ ջղախոտը ունի լայն ձվաձև տերևներ, որոնց երկայնքով անցնում է 3—9 աղեղնաձև ջղեր: Տերևները ամբողջաեզր են կամ թույլ ատամնաձև կտրտված, տերևակոթունները լայն են ու երկար:

2. Միջին ջղախոտը թավոտ է, կարճ կոթունների վրա նստած ձվածիր տերևներով: Ծաղկափթությունը շատ խիտ է, բաց վարդագույն ծաղիկներով:

3. Նշտարաձև ջղախոտը նախորդներից տարբերվում է նեղ նշտարաձև տերևներով և կարճ, գրեթե ձվաձև ծաղկափթությամբ:

Ջղախոտերը աճում են ճանապարհների եզրերին,

## Ե Ր Ի Տ Ա Ս Ա Ր Դ







digitised by A.R.A.R.@

# ՀԱՎԱՔԻ՛Ր ԴԵՂԱԲՈՒՅՍԵՐ



Մեծ ջղախոտ

այգիներում, բանջարանոցներում, դաշտերում ու մարգագետիններում:

Բուժիչ հատկություններով օժտված են տերևները, որոնք ժողովրդական բժշկության մեջ օգտագործվում են քերծվածքների, կտրվածքների, թարախակալումների, մաշկի բորբոքումների, միջատների խայթման դեպքում, ինչպես նաև որպես արյունարգել միջոց:

Ջղախոտը նաև շնչառական ուղիների հիվանդությունների բուժման լավագույն միջոցներից մեկն է:

Դեղորայք պատրաստելու համար ջղախոտի տերևների հավաքը սկսում են ծաղկման սկզբից մինչև ուշ աշուն (մինչև տերևների թառամելը) և չորացնում բացօթյա պայմաններում:

Մի շարք երկրներում դեղագործական նպատակների համար կազմակերպված է ջղախոտի մշակություն:

## ԱՐՎԵՍՏԱԳԵՏԸ

*Վիգեն Բերեչիկլյանը երիտասարդ, շնորհալի արվեստագետ է, ծնվել է Բեյրութ քաղաքում 1953 թվականին: Լուսանկարչության գաղտնիքներին կատարելապես տիրապետելու համար Բերեչիկլյանը հետևում է Նյու-Յորքի լուսանկարչության ինստիտուտի դասընթացներին:*

*Վիգենի լուսանկարները պատկերում են բնության տեսարաններ, մարդկային հետաքրքիր դիմանկարներ:*

*«Լուսանկարչությունը պատճառ հանդիսացավ, որպեսզի ավելի մոտիկից ճանաչեմ մարդուն, նրա խոհերն ու հոգեբանությունը»,— ասում է Վիգենը: Շնորհալի հայ երիտասարդը Բեյրութում կայացած լավագույն լուսանկարի երկու մրցույթի մրցանակակիր է:*

*ԺԱՆԵԹ ՔԱՍՈՒՆԻ*
*Բեյրութ*

## ՋՐԱՊՂՊԵՂ

Միամյա բույս է, պատկանում է հնդկացորենազգիների ընտանիքին: Ամռանը ցողունը կանաչ գույն է ունենում, իսկ աշնանը կարմրում է: Տերևները նեղ-տարաձև են, հերթադիր դասավորված հանգուցավոր ցողունների վրա, որոնք սովորաբար ճյուղավորված են լինում: Տերևի վերին մակերեսը մերկ է, ներքինը՝ պատած մանր մազմզուկներով: Ծաղիկները շատ մանր են, նստած կարճ կոթունների վրա: Ծաղկում է ամռան սկզբից մինչև աշուն: Բույսի բոլոր մասերը կծու համ ունեն՝ նման սովորական պղպեղի:

Բուժիչ նպատակներով օգտագործվում է բույսի ամբողջ վերգետնյա մասը:

Ջրապղպեղի բուժիչ հատկությունները մարդկությանը հայտնի են եղել հնագույն ժամանակներից: Այն օգտագործվել է արյունահոսության, ճահճատենդի և մի քանի այլ հիվանդությունների դեպքում: Հետագայում ջրապղպեղի արյունահոսությունը դադարեցնող հատկությունը փորձերով հաստատվել է, որի հիման վրա



Ջրապղպեղ



digitised by A.R.A.R.@

այն ներկայումս էլ իր արժանի տեղն ունի դեղագործության մեջ:

Ջրապղպեղը կարող է ծառայել նաև որպես հումք կանաչ ներկեր ստանալու համար:

Աճում է խոնավ տեղերում, ճահիճներում, գետերի, առվակների, ջրանցքների ափերին ու վարելահողերում: Տարածված է Ստեփանավանի, Իջևանի, Սևանի ավազանի շրջաններում, Երևանում՝ Հրազդանի ափերին:

## ՎԱՀԱՆԱՊՏԵՐ



Վահանապտեր

Բազմամյա անցողուն խոտաբույս է, խոշոր՝ մինչև 1 մետրի հասնող մերձարմատային տերևներով:

Պատկանում է իսկական պտերների ընտանիքին:

Հզոր կոճղարմատը պատած է լինում անցած տարիների տերևակոթերի մնացորդներով:

Պտերները չեն ծաղկում ու սերմեր էլ չեն առաջացնում, բազմանում են սպորներով: Սպորները առաջանում են սպորանգիումների մեջ, որոնց կույտերը երկու շարքով դասավորված են լինում տերևի հակառակ երեսին:

Վահանապտերը աճում է գլխավորապես խոնավ ու ստվերոտ տեղերում՝ անտառներում, ձորերում, ժայռերի արանքներում և այլն:

Դեղագործական նպատակներով օգտագործվում է կոճղարմատը: Պտերների բուժիչ հատկությունների մասին մարդիկ գիտեին դեռ շատ վաղուց՝ այդ մասին մանրամասն նկարագրել է 11-րդ դարի նշանավոր բժիշկ, գիտնական Ավիցենան:

Ներկայումս կոճղարմատից ստանում են լուծույթներ, որոնք օգտագործվում են մարդկանց և գյուղատնտեսական կենդանիների օրգանիզմում ապրող որդերի՝ հատկապես երիզորդների դեմ պայքարելու համար:

Դեղորայք պատրաստելու համար վահանապտերի կոճղարմատը հանում են աշնանը կամ վաղ գարնանը մինչև տերևների առաջանալը և չորացնում լավ օդափոխվող միջավայրում: Այն թունավոր է և ոչ ճիշտ օգտագործման դեպքում հնարավոր են թունավորումներ:

Վ. ՈՍԿԱՆՅԱՆ
Կենսաբանական գիտ. թեկնածու

---



*Սկսելով մի տառից, ժամացույցի սլաքների շարժման ուղղությամբ հաշվեք մինչև տասներեքը և ամեն անգամ տասներեքերորդ տառը դուրս հանելով դասավորեք ըստ հերթականության: Դուք կկարդաք ռուս նշանավոր գրողի ազգանունն ու նրա պատմվածքներից մեկի վերնագիրը:*

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆԸ




*Այս գծագրի մեջ, ինչպես տեսնում եք, չկան զույգ թվեր: Վանդակներում եղած թվերն այնպես դասավորեք, որ թե՛ հորիզոնական, թե՛ ուղղահայաց և թե՛ անկյունագծերով չորս թվերի գումարը հավասար լինի 64-ի:*

| | | | |
|---|---|---|---|
| 1 | 3 | 5 | 7 |
| 9 | 11 | 13 | 15 |
| 17 | 19 | 2[illegible] | 23 |
| 25 | 27 | 29 | 31 |

### ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ—«ՊԻՈՆԵՐ» № 9

*Խաչբառ—գրականություն*

1. Սարո, 2. Սաֆո, 3. Արայ, 4. Նանա, 5. Սոմա, 6. Միլն, 7. Լի Բո, 8. Բոտև, 9. Սկոտ, 10. Կարո, 11. Ճայը, 12. Մահը, 13. Աթոս, 14. Սանդ, 15. Էմին, 16. Սեմա:



digitised by A.R.A.R.@



# ՊԱԲԼՈ ՊԻԿԱՍՈ

(ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԸ)

Մեր ժամանակի խոշորագույն նկարիչ Պաբլո Պիկասոյի ստեղծագործությունը առաջնակարգ դեր խաղաց XX դարի կերպարվեստի զարգացման գործում։

Պիկասոն ծնվել է 1881 թվին, իսպանական Մալագա քաղաքում։ Տասնվեց տարեկանում ընդունվել է Մադրիդի Սան-Ֆեռնանդո ակադեմիան։ 1904 թվից ապրում և ստեղծագործում է Փարիզում։ Պիկասոյի արվեստում ամենահիմնականը, գրավիչ վարպետության հետ միասին, հումանիզմն է։

1937 թվին, երբ ֆաշիստները ավերեցին իսպանական Գերնիկա քաղաքը, Պիկասոն ստեղծեց իր լավագույն կտավներից մեկը՝ «Գերնիկան»։ Դրամատիկ ուժով ներկայացնելով մահն ու ավերածությունը, նա ցասումնալից բողոքում էր պատերազմի անմարդկային բնույթի դեմ։ «Նկարները չեն ստեղծվում պատեր զարդարելու համար,— ասում է Պիկասոն։— Նկարը պայքարի գործիք է՝ գրոհի և հաղթանակի ժամանակ»։

Աշխարհում լայն տարածում է գտել Պիկասոյի մի այլ հիանալի աշխատանքը՝ «Խաղաղության աղավնին» պլակատը, որը դարձել է խաղաղության համար մարտնչողների խորհրդանիշ։

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 10 հոկտեմբեր 1971 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


| | |
|---|---|
| Ուսուցիչը — Հ. ԳՐԻԳՈՐՅԱՆ | 2 |
| Ուսուցչի պատկեր — Տ. ԽՈՐՇԻԴՅԱՆ | 2 |
| Հնար լինեն — Ա. ԽԱՉՈՒՆՑ | 3 |
| Կանաչ դաշտը — Հ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ | 4 |
| Մեր դեղին հավիկը և մենք — Օ. ՍԱՆԱՀՅԱՆ | 8 |
| Աշուն — Ա. ՀԱԿՈԲՅԱՆ | 9 |
| Արևի ժպիտներ — Ն. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ | 10 |
| Խոնչա Բզեզը — Զ. ԽԱԼԱՓՅԱՆ | 10 |
| Հուշեր — Մ. ԱԼԱԶԱՆ | 12 |
| Ինչո՞ւ են տղաները պասսիվ — Է. ՄԱԼԽԱՍՅԱՆ | 13 |
| Մարդը և խոսքը դեմ հանդիման — Ալ. ԴՈՐԲՈՎՍԿԻ | 14 |
| Մեր թանկագին հյուրերը — Վ. ԱՆԱՆՅԱՆ | 16 |
| Սերն ու արահետը — ՅՈՒ. ՍԱՀԱԿՅԱՆ | 16 |
| Ինչուկ | 17 |
| Անտիկ աշխարհի խոշորագույն քանդակագործը | 19 |
| Անձրևից հետո — Ք. ԲՈԼՈՐՉՅԱՆ | 19 |
| Երիտասարդ արվեստագետը — Ժ. ՔԱՍՍԻՆԻ | 20 |
| Ճանաչի՛ր և հավաքի՛ր դեղաբույսեր | 20 |
| Ժամանց | 22 |
| Պաբլո Պիկասո | 23 |


*Շապիկի առաջին էջը՝*
*Եկ. ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԷՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Ի., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-200, ул. Кармир банаки, № 15, почт. инд. 375200.

*Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 05389։ Պատվեր 925։ Տպաքանակ՝ 68900։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 5/X 1971 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։



digitised by A.R.A.R.@

